ԱՊՐԻԼ
№ 4 1964 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ,ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԸ Հայաստանում 1961 թ.

ՀՀԳ-ի ֆոտոխրոնիկա

# 70-րդ տարին

Լրացավ Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար, ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովի ծննդյան 70 տարին։

Չնայած իր պատկառելի տարիքին, ընկեր Խրուշչովը շարունակում է աշխատել երիտասարդական աշխուժով ու եռանդով։ Նրան հաճախ կարելի է տեսնել մեր երկրի ամենահեռավոր կոլտնտեսությունների դաշտերում, սովխոզներում ու գործարաններում՝ կոմունիզմ կառուցող էնտուզիաստների հետ խորհրդակցելիս։ Աշխատասիրությունը եղել է ընկեր Խրուշչովի ամենաբնորոշ գիծը դեռևս ամենավաղ հասակից։ Փոքրիկ Նիկիտան ձմռան ամիսներին սովորում էր դպրոցում, իսկ վաղ գարնանից մինչև ուշ աշուն բատրակություն էր անում հարուստների մոտ։ Ապա նա հրաժեշտ տվեց իր ծննդավայրին՝ Կուրսկի նահանգի Կալինովկա գյուղին, գնաց Դոնբաս, իր ածխահատ հոր մոտ և աշխատանքի ընդունվեց որպես փականագործի աշակերտ։ Ու այսպես սկսվեց նրա նոր կյանքը բանվորական միջավայրում։ Այստեղ էլ նա ընդունվեց կոմունիստական պարտիայի շարքերը։

Քաղաքացիական պատերազմի տարիներին, երբ կապիտալիստներն ու կալվածատերերը ոտքի էին ելել կործանելու սովետական նորաստեղծ կարգերը, Նիկիտա Սերգեևիչ Խրուշչովը մեկնեց ռազմաճակատ։ Պատերազմից հետո նա վերադարձավ հանքերը և շատ չանցած ընդունվեց Դոնբասի ինդուստրիալ ինստիտուտի բանֆակը։

Այնուհետև Ն. Ս. Խրուշչովն անցավ պարտիական աշխատանքի, կատարելով բազմաթիվ պատասխանատու գործեր։ Այժմ նա մեր պարտիայի ու կառավարության ղեկավարն է և շատ բան է արել մեր երկրի հզորության բարձրացման և խաղաղության պահպանման գործում։

Ընկեր Խրուշչովը երեք անգամ արժանացել է Սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր ու պատվավոր կոչման, պարգևատրվել է նաև բազմաթիվ շքանշաններով ու մեդալներով։

# ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԸ ԿՐԵՄԼՈՒՄ

Ամեն օր, ուշ երեկոյան, երբ Կրեմլի Սպասկյան աշտարակի ժամացույցի սլաքները ցույց են տալիս ժամը 12-ը, Մոսկվայի ռադիոն ամբողջ աշխարհով մեկ տարածում է Կրեմլյան ժամացույցի ծանոթ զարկերի հնչյունները: Այդ զարկերով սկսվում և ավարտվում է մեր մեծ Հայրենիքի աշխատանքային օրը:

Կրեմլը Մոսկվայի սիրտն է: Այստեղ են գտնվում սովետական կառավարությունը և մեր պետության բարձրագույն օրգանը՝ Գերագույն սովետը: Այստեղից մեր երկրի տարբեր ծայրերն են թռչում պետական կարևոր նշանակություն ունեցող բոլոր որոշումները, հրամանագրերը...

Երկրագնդի վրա կա՞ արդյոք մեկը, որ լսած չլինի Կրեմլի մասին: Այստեղ կան հնագույն շինություններ, ճարտարապետական հոյակապ կոթողներ, պատմական հուշարձաններ... Սակայն այսօր ես ուզում եմ պատմել դրանցից միայն մեկի՝ մի շատ նվիրական ու սիրելի թանգարանի մասին. դա Վլադիմիր Իլյիչ Լենինի տուն-թանգարանն է:

... 1918 թվականի գարնանն էր: Ընդամենը չորս ամիս էր անցել Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից, երբ սովետական Ռուսաստանի մայրաքաղաքը Պետրոգրադից փոխադրվեց Մոսկվա: Այդ օրերին Մոսկվա, Կրեմլ տեղափոխվեց նաև սովետական կառավարությունը՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի ղեկավարությամբ:

Ամենավեհ ու նվիրական զգացմունքներով ներս ես մտնում Վլադիմիր Իլյիչի աշխատասենյակը, որը Ժողովրդական կոմիսարների խորհրդի՝ սովետական կառավարության զբաղեցրած վեց սենյակներից մեկն էր:

Ու մի պահ մտքով սլանում ես ոչ հեռավոր անցյալը:

... Առավոտ է: Ահա շտապ քայլերով նա ներս է մտնում իր աշխատասենյակը, Լրջախոհ մոտենում կանաչ թավշով ծածկած աշխատասեղանին, վերցնում մկրատը, բացում բազում նամակներ, գրանցումներ կատարում, արագ հայացքով դիտում է օրվա թերթերը, մի կողմ դնում... Այսպես էր սկսվում Վլադիմիր Իլյիչի աշխատանքային օրը այն հինգ տարիների ընթացքում, երբ նա ապրում էր Կրեմլում, մինչև 1922 թվականի դեկտեմբերի 12-ը, նրա առողջության վիճակը վատթարանալուց հետո, նա տեղափոխվեց մերձմոսկովյան Գորկա ամառանոցային վայրը:

Վլադիմիր Իլյիչն իր ամբողջ կյանքի ընթացքում միշտ եղել է ճշտապահ, թանկ է գնահատել իր և ուրիշի ժամանակը: Նա աշխատասենյակ էր գալիս ճիշտ ժամը 10-ին և մնում մինչև ժամը 4-ը, ապա փոքր ընդմիջումից հետո նորից վերադառնում էր աշխատասենյակ, ուր աշխատում էր մինչև երեկոյան ժամը 10-ը: Կրեմլի իր այս աշխատասենյակում Վլադիմիր Իլյիչը բազմաթիվ անգամ հանդիպել, տեսակցել է աշխատավորների ներկայացուցիչների, գրողների, ժուռնալիստների, արտասահմանյան հյուրերի հետ:

Աշխատասեղանից ոչ այնքան հեռու դրված մեկ այլ սեղանի շուրջը կան կաշվե բազկաթոռներ: Շատերին ծանոթ են այս բազկաթոռները այն լուսանկարից, որտեղ պատկերված է Վլադիմիր Իլյիչի զրույցը անգլիական նշանավոր գրող Հերբերտ Ուելսի հետ, որը նստած է այս բազկաթոռներից մեկին: Ինչպես հայտնի է, այդ զրույցից հետո անգլիացի գրողը թերահավատությամբ վերաբերվեց մեր երկրի էլեկտրիֆիկացիայի պլանին, որի մասին նրան պատմեց Վլադիմիր Իլյիչը: Դա իրոք մի հսկայական պլան էր՝ նշանավոր ԳՕԷԼՌՕ-ի պլանը, որը լրիվին պետք է փոխեր մեր երկրի դեմքը: Ուելսը, մեծ ֆանտազիայի



տեր այդ գրողը, չէր կարող պատկերացնել, որ այդպիսի վիթխարի պլան հնարավոր է իրականացնել մի երկրում, որը ցարական Ռուսաստանից ժառանգություն էր ստացել աղքատություն, ավերածություն, սով:



Հետագայում Ուելսը գրեց իր նշանավոր գիրքը՝ «Ռուսաստանը մշուշի մեջ» վերնագրով, որտեղ նա Լենինին անվանեց «Կրեմլյան երազող»: Անցան տարիներ: Սովետական ժողովուրդը կյանքում իրագործեց Լենինյան պլանը՝ մեր երկիրը դարձավ էլեկտրականության ու լույսի երկիր:

Վլադիմիր Իլյիչի աշխատասենյակում կան գրապահարաններ, որտեղ կա մոտ երկու հազար գիրք: Աշխատասեղանի երկու կողմերում դրված են «պըտըտվող» գրադարակներ, որոնք պատրաստվել են Վլադիմիր Իլյիչի պատվերով՝ ընթացիկ, ամենօրյա աշխատանքում պետք եկող անհրաժեշտ գրականության համար:

Աշխատասեղանին դրված են հեռախոսներ, հեռախոսի համարների ցուցակ, օրացույց, պատերին փակցված են քարտեզներ: Այստեղ գտնվում են նաև բազմաթիվ նվերներ, որոնք նա ստացել է երկրի տարբեր ծայրերից՝ ի նշան խորը երախտագիտության ու հարգանքի:

Վլադիմիր Իլյիչի աշխատասենյակին կից գտնվում էր Ժողկոմխորհի նիստերի դահլիճը: Ամեն անգամ նիստերի օրը, երբ ժողովրդական կոմիսարները հավաքվում էին հերթական նիստի, բացվում էր աշխատասենյակի դուռը և դահլիճում հայտընվում էր Ժողկոմխորհի նախագահը: Նա մոտենում էր ամբողջ դահլիճի երկարությամբ ձգվող սեղանին, որի շուրջը նստած էին ժողովրդական կոմիսարները, նստում ծղոտից գործած բազկաթոռին, և սկսվում էր աշխարհում առաջին սովետական կառավարության նիստը:

Դուրս գալով աշխատասենյակից, միջանցքը քեզ տանում է դեպի Վլադիմիր Իլյիչի բնակարանը, որը բաղկացած է պարզ ու համեստ կահավորում ունեցող չորս փոքրիկ սենյակներից: Դրանցից մեկում ապրել է Վլադիմիր Իլյիչը: Սենյակի մուտքի մոտ, պատուհանի դիմաց, գտնվում է գրասեղանը, որի վրա կան սովորական թանաքաման, դպրոցական գրիչ, սեղանի օրացույց ու մակագրված գրքեր, դրանցից մեկը ռուս մեծ գիտնական Կ. Ա. Տիմիրյազևի «Գիտություն և դեմոկրատիա» գիրքն է, գիտնականի ջերմ մակագրությամբ: Գրասեղանից ոչ հեռու գտնվում է մետաղյա մահճակալ՝ երկու բարձերով, իսկ կողքին՝ փոքրիկ սեղան, որի վրա էլեկտրական լամպն է դրված: Գրապահարանի բազմաթիվ գրքերի մեջ է Մարքսի «Կապիտալի» գերմանական հրատարակությունը և նրա ռուսերեն առաջին թարգմանությունը: Ահա Վլադիմիր Իլյիչի սենյակի ամբողջ կահավորանքը:

Հաջորդ սենյակը Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայայինն է, որն իր կահավորումով շատ նման է Վլադիմիր Իլյիչի սենյակին: Ամենից առաջ ուշադրություն է գրավում աշխատասեղանի վրա դրված փոքրիկ ալբոմը, որը մեծ խնամքով ու ճաշակով կազմել է Նադեժդա Կոնստանտինովնան: Ալբոմը բաղկացած է Վլադիմիր Իլյիչի տարբեր ժամանակների լուսանկարներից, որոնք նա կտրել, հանել է թերթերից ու ամսագրերից: Ալբոմի վրա լուսանկարներից կազմված տառերով գրված է՝ «Իլյիչ»:

Երրորդ փոքրիկ սենյակը պատկանում էր Վլադիմիր Իլյիչի փոքր քրոջը՝ Մարիա Իլյինիչնային: Այս երեք սենյակների միջև գտնվում է ճաշասենյակը, որը միաժամանակ Վլադիմիր Իլյիչի համար հանդիսանում էր հյուրասենյակ-ընդունարան: Այստեղ, աշխատանքից ազատ ժամերին Վլադիմիր Իլյիչը հանդիպում էր իրեն այցի եկած զանազան գործիչների, պարտիական աշխատողների հետ:

Մոտ ինն տարի է, ինչ Վլադիմիր Իլյիչ Լենինի տուն-թանգարանը Կրեմլում իր դռները լայնորեն բացել է այցելուների առաջ:

*ԱԼԲԵՐՏ ԳԱՍՊԱՐՅԱՆ*



ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ

## ԺԱՄԱՑՈՒՅՑ ՋԱՆ

Ժամացո՛ւյց ջան, ի՛նձ նայիր,
Այ տե՛ս՝ միտքդ լա՛վ պահիր,
Հետո չասես չասացիր,
Սուսփուս ելար գնացիր...
Ես գնում եմ քնելու,
Դու արթուն ես մնալու.
Աչիկներդ մեծ-մեծ բաց,
Փիսիկի պես զգույշ կաց...
Քեզ վրա է իմ հույսը.
Հենց որ բացվի նոր լույսը,
Բարձր, բարձր զանգ կտաս,
Ինձ քո զանգով ձայն կտաս։
Այ, ասում եմ՝ չհոգնես,
Զծուլանաս, չկանգնես,
Թե չէ՝ քնած կմնամ
Ու դպրոցից կուշանամ...

## ԻՄ ՆԱՄԱԿԸ

Քեռուս նամակ եմ գրել,
Տակը նկար եմ սիրել,
Նկարում մի ծիտիկ կա,
Կողքին ջուր ու կուտիկ կա։
Նամակս շատ երկար չէ,
Բայց դե այնքան էլ կարճ չէ.
Բարևել եմ Անիկին,
Բարևել եմ Մանիկին,
Ուղարկել եմ շատ համբույր,
Գրել եմ, որ գան մեզ հյուր։
Նամակս շատ մաքուր է,
Միայն՝ թանաքը ջուր է,
Ջորս տեղ ծծել է, կաթել,
Մի տեղ գրիչն է մտել,
Երեք տեղով ջնջում կա,
Ու էլ... ուրիշ բան չկա։

# «ՍԱՔՍԱՈՒԼ»

ՄԻՔԱՅԵԼ ՇԱԹԻՐՅԱՆ

Ձմեռն անցավ, վրա հասավ ապրիլ ամիսը։ Հարկավոր էր կամաց-կամաց սկսել նավակի կառուցումը, որպեսզի արձակուրդներին ամեն ինչ պատրաստ լինի։ Բայց երբ մենք նորից հաշվեցինք մեր փողերը՝ տեսանք, որ էլի բավական գումար պակասում է։ Ուրեմն, մինչև դասերի վերջանալը պիտի շարունակեինք զրկել մեզ բոլոր բավականություններից, ուրիշների առաջ խեղճ մնայինք։ Եվ ես այլևս չդիմացա։

— Տղե՛րք, եկեք վերջ տանք,—ասացի ես Սաքոյին ու Սաքուլին։ —Ախր այսպես չի լինի. ուրիշները կինո են գնում, կրկես, զազանանոց... Շուտով կսկսեն պաղպաղակ ծախել, իսկ մենք այս անտեր նավակի պատճառով ամեն ինչից զուրկ ենք...

Նրանք զարմացած ինձ նայեցին.

— Ի՞նչ ես առաջարկում։

— Ես սպորտի խանութում հեծանիվներ եմ տեսել, մեր փողերով կարող ենք երկու հատ առնել ու հերթով քշել... Ու դեռ կմնա կինոյի ու կրկեսի համար։

Ի՜նչ աղմուկ բարձրացրին, ինչպե՜ս հարձակվեցին վրաս... «Երեխա՞ ես, ի՞նչ է,— ասում էին նրանք։ —Կինո՜, զազանանո՜ց, պաղպաղա՜կ... Այսքան դիմացել ենք՝ մի քիչ էլ կհամբերենք։ Անպայման կպատրաստենք մեր նավակը և կճանապարհորդենք Սևանի շուրջը։ Այն ժամանակ քո ասած «ուրիշները» նախանձից կճաքեն...»

Բայց որքան ավելի էին նրանք վիճում, այնքան ավելի էի համառում ես։ Ինչպես այն պնգամ, երբ համոզեցի նրանց Սևանի շուրջը ճանապարհորդել, հիմա էլ ես ուզում էի ետ կանգնեցնել տղաներին այդ մտքից, համոզել, որ հեծանիվ առնենք։

— Ի՞նչ պակաս բան է հեծանիվով ճանապարհորդելը,—ասում էի ես։ — Ձեր այդ ինքնաշեն նավակով կարելի է միայն Սևանում շրջել և լճափի վայրերը տեսնել։ Այն էլ դեռ հայտնի չէ, կլողա՞ նավակը, թե՞ շուռ կգա, հենց որ մեջը նստենք... Իսկ հեծանիվով ուր ուզես՝ կգնաս. կուզես՝ Աշտարակ, կուզես՝ Էջմիածին, Գառնի, Հրազդան, ուր որ քեֆդ տա...

Իսկ տղաները համառում էին։ Կպել էին այդ անիծված նավակից ու պոկ չէին գալիս։ Չէ՜ ու չէ՜, պիտի սարքենք, ճանապարհորդենք լճի շուրջը և աշնանը բոլորին պատմենք մեր արկածները, ցույց տանք լուսանկարները...

---

Սկիզբը՝ նախորդ համարում։

Սա առաջին անգամն էր, որ ես չէի կարողանում տղաներին իմ կողմը թեքել, և դա ինձ կատաղեցրեց: Այո, եթե կուզեք, սա՛ էր մեր խռովելու գլխավոր պատճառը: Չէ՞ որ ամեն մի ընկերական շրջանում տղաներից մեկը գլխավորն է լինում. բոլորը նրան են լսում, նրա ասածն անում: Այդպես էր Թիմուրը իր ընկերների համար, Թոմ Սոյերը՝ Հեկլբերի Ֆիննի համար... Ես համոզված էի, որ մեր եռյակի մեջ Թիմուրը կամ Թոմ Սոյերը ես էի: Ո՞վ առաջինն ասաց. «Տո հենց թող լինենք Սաքսաո՛ւլ...» Ո՞ւմ առաջարկով որոշվեց նավակ սարքել և Սևանի շուրջը ճանապարհորդել... Իսկ հիմա ստացվում էր, որ իմ խոսքը նրանց համար ոչ մի նշանակություն չունի, որ նրանք մտադիր էլ չեն ինձ որպես ղեկավար ընդունելու:

Ես պիտի պատժեի նրանց. ցույց տայի, որ առանց ինձ ոչինչ անել չեն կարող:

— Որ այդպես է, տվե՛ք իմ փողերը,— ասացի ես: — Ես ինձ համար հեծանիվ կառնեմ, իսկ դուք, ուզում եք, սուզանավ սարքեք...

* * *

— Այ, կփորձարկենք նավակը և մի ամսից, երբ դասերը վերջանան, կգնանք Սևանի շուրջը ճանապարհորդելու... — ոգևորված պատմում էր Սաքուլը շրջապատողներին:

— Սևանի շո՞ւրջը... Իսկ ձեր ծնողները կթողնե՞ն... Բա որ հանկարծ փորձանք պատահի՞...

— Ոչինչ էլ չի պատահի, մենք լավ լողորդներ ենք,— ժպտաց Սաքուլը: — Եվ հետո, մենք հո երկուսով չե՞նք գնալու: Մենք պատմեցինք մեր ծրագիրը ջոկատավարին, ցույց տվեցինք գծագրերը... Նա շատ հավանեց և ասաց, որ եթե փորձարկումը լավ անցնի՝ մեր ամբողջ ջոկատը, շեֆ գործարանի օգնությամբ, էլի՛ հինգ-վեց այսպիսի նավակներ կսարքի ու ամառը արշավի կգնանք Սևան... Դա կլինի շարժական ճամբար, հասկանո՞ւմ եք: Կանգ կառնենք լճափի բոլոր բնակավայրերի մոտ, վրաններ կխփենք, էքսկուրսիաներ կկազմակերպենք, հին ուրարտական արձանագրությունները կտեսնենք, կծանոթանանք քաղաքների պատմությանը և ներկա վիճակին, այնտեղի պիոներների հետ հանդիպումներ կունենանք...

Ես զգում էի, որ աչքերս զարմանքից չռվում են: Այ թե ի՜նչ... Ուրեմն ամբողջ ջոկատի՞ն են իրենց կողմը շուռ տվել... Եվ միայն ե՞ս եմ, որ պիտի մի կողմ մնամ, չլինեմ այդ շարժական ճամբարում, չմասնակցեմ էքսկուրսիաներին, պիոներական հանդիպումներին... Իսկ ես կարծում էի, թե...

Այո, ես կարծում էի, թե իմ հեռանալուց հետո այդ նրանք է, որ մենակ կմնան...

Ապրիլի 25-ին իմ ծննդյան օրն էր և ես խնդրեցի ծնողներիցս, որ ինձ ոչ մի նվեր չառնեն, այլ այնքան փող ավելացնեն իմ ունեցածին, որ կարողանամ հեծանիվ առնել:

Հենց առաջին օրը, երբ հայտնվեցի բակում իմ հեծանիվով, իսկույն ինձ մոտեցան մյուս տղաները ու սկսեցին խնդրել.

— Վա՜յ, Սարգսի՛կ ջան, տո՛ւր մի քիչ քշենք, ի՞նչ կլինի...

Այսպիսով ես շրջապատվեցի նոր ընկերների մեծ խմբով, մինչդեռ նրանք մենակ նստած էին կամ մեկի, կամ մյուսի տանը, և նորից ինչ-որ փոփոխություններ էին մտցնում նախագծի մեջ:

Բայց ես գիտեի, որ իմ հեռանալուց հետո նրանք



առավել ևս չեն կարողանա անհրաժեշտ նյութերը գնել, ուստի քթիս տակ ծիծաղում էի. «Նստեք, ծեզ ու ծեզ գոռոզացեք, տեսնենք վերջն ի՞նչ է լինելու...»

Իմ փոքրիկ քույրիկը՝ Հասմիկը Սաքոյի քրոջ՝ Տաթևիկի ընկերուհին էր։ Մի օր նա եկավ Սաքոյենց տնից և պատմեց, որ Սաքոն ու Սաքուլը նույնպես կպել են ծնողներին՝ թե «Մեր ծննդյան նվերների հաշվին փող տվեք մեզ, բան պիտի առնենք...» Ես իսկույն գլխի ընկա, թե ինչ «բան» է դա։ Իհարկե, հեծանիվներ են ուզում առնել, որ ինձնից ետ չմնան։ Ուրեմն կակղել են... Վաղը կհայտնվեն իրենց հեծանիվներով բակում, կըսկըսեն մրցել հետս, կամաց-կամաց կհաշտվենք ու հետո իմ ղեկավարությամբ հեռու և մոտիկ զբոսանքներ կկազմակերպենք...

Բայց պարզվեց, որ ես սխալվում էի։ Մայիսմեկյան տոներից հետո ես տեսա, որ նրանք բակ են մտնում ինչ-որ մեծ փաթեթներ ձեռքներին։ Մյուս օրը Հասմիկն ու Տաթևիկը ասացին, թե նրանք հարևանների ու ազգականների տներն ընկած՝ հին ու փչացած շարժական մահճակալներ են հավաքում։ (Այժմ ես վերջապես իմացա, թե ինչի համար էին պետք այդ մահճակալները. նավակի հիմնակմախքը նրանք ալյումինի խողովակներից են սարքել)։ Եվ այնուհետև, դասերից ազատ ժամանակ, Սաքոյենց պատշգամբից շարունակ լսվում էր խարտոցի կամ սղոցի վըժժոցը, մուրճի թխթխկոցը... Պարզ էր. նրանք այնուամենայնիվ որոշել են սարքել իրենց նավակը։ Առանց ինձ։ Իմ ջգրու...

Մինչդեռ իմ ընկերությունը բակի մյուս տղաների հետ չէր ստացվում։ Սկզբում ես դա այսպես էի բացատրում. այն ժամանակ, երբ մենք կազմել էինք մեր «Սաքսառլը», նրանք էլ իրենց սերտ ընկերություններն էին ստեղծել, որտեղ ամեն մեկը գիտեր մյուսին հինգ մատի նման, խոսքի կեսից հասկանում էր նրա միտքը։ Եվ որոշ ժամանակ էր պետք, որպեսզի ես այնքան մոտենայի նրանց, որքան մոտեցել էի Սաքոյին ու Սաքուլին...

Բայց մի օր էլ այդ տղաներից մեկը, հեծանիվս բակում քշելիս, այնպես զարկեց պատին, որ առաջին անիվը 8 թվանշանի ձև ընդունեց։ Ես բարկացած ասացի նրան, որ եթե այդպես վարվի, էլ չեմ տա հեծանիվս քշի։ Նա իսկույն նեղացած պատասխանեց.

— Դա՜հ, շատ պե՜տքս է... կարծում ես՝ լավությո՞ւն ես անում, որ մեզ հետ ընկերացել ես... Դու որ ձեր «Սաքսառլի» հետ չկարողացար ընկերություն անել՝ մեզ ի՞նչ ընկեր կլինես...

Այդ խոսքերը սաստիկ ծակեցին սիրտս։ Ուրեմն, ոչ միայն նրանք, այլև բակի մյուս տղաները այն կարծիքին էին, որ մեր երեքի մեջ վատը ես էի։ Որ այդ է՛ս չկարողացա ընկերություն անել մյուսների հետ... Ահա թե ինչու էին բակի տղաները իմ նկատմամբ այդքան զգույշ...

Հեծանիվս քշել՝ քշում էին, բայց մյուս դեպքերում հեռու էին պահում իրենցից...

Ես էլ նրանց ասացի՝ «շատ պե՛տքս է...» վերցրեցի հեծանիվս ու հեռացա։ Ու այդ օրվանից մենակ շրջում էի քաղաքի փողոցներում, քշում հասնում էի Զանգվի ձորը, կամ Թբիլիսիի խճուղին, կամ մինչև իսկ Էջմիածին ու ետ գալիս։

Իսկ երբ մտնում էի բակը, տեսնում էի այն երկուսին պատշգամբում՝ եռանդուն աշխատելիս։ Սարքում էին, համառորեն սարքում իրենց նավակը։ Ո՛չ թե մեր, այլ իրենց նավակը...

Եվ ահա այսօր առավոտյան շուտ Տաթևիկը վազեվազ եկավ մեզ մոտ ու շնչակտուր ասաց.

— Նրանք վերջացրին... Նավակը... Հենց նոր տարան Կոմսոմոլի պարկ... Լճի վրա փորձելու...

Ես սկզբում ծուլ եղա տեղումս, հետո զսպեցի ինձ ու նորից նստեցի։ Լավ, վերջացրել են՝ թող վերջացնեն։ Փորձարկում են՝ շատ պե՛տքս է... Ո՞վ գիտի, իսկի չլողա էլ... Իսկ եթե լողաց, ապա միայն Կոմսոմոլի պարկի լճակում... Խեղճե՛ր, երազում էին Խաղաղ օվկիանոսի մասին, իսկ վերջացրին մի բուռ լճակով։ Իսկ ես հիմա կվերցնեմ հեծանիվս ու կգնամ Այրր լիճ... Կարո՞ղ են, թող իրենց նավակով հասնեն այնտեղ... Դե՛ թող հասնեն, է՛լի...



Ես իսկապես վերցրեցի հեծանիվս ու դուրս եկա։ Քշում էի դեպի Էջմիածնի խճուղին, բայց միտքս նրանց հետ էր... Հետաքրքիր է, ի՞նչ փոփոխություն են մտցրել նախագծի մեջ... Մե՞ծ են սարքել նավակը, թե՞ փոքր... Ինչների՞ն էր պետք շարժական մահճակալները... Եվ կլողա՞ նավակը, թե՞ չի լողա... Երանի չլողա... Այն ժամանակ չեն կարողանա ծիծաղել վրաս, չեն ասի, թե՝ «Գնացիր, իսկ մենք առանց քեզ էլ սարքեցինք նավակը...»

Հետո մտածեցի. «Իսկ եթե նավակը մի բան չի, բայց նրանք սկսեն գլուխները գովել, թե «հրաշք նավ» են շինե՞լ... Ամառը կգնան, մի քանի օր մի գյուղում կնստեն, հետո կգան ու կսկսեն պարծենալ. «Մեր նավով Սևանում ճանապարհորդեցինք...» Ի՞նչ կարող ես անել, ինչպե՞ս կբռնես դրանց սուտը»։

«Ո՛չ,—ասացի ինքս ինձ,—ես պիտի տեսնեմ այդ նավակը: Պիտի համոզվեմ, որ նա չի լողում, որ նրանով չի կարելի Սևանում ճանապարհորդել...»

Ու քշեցի հեծանիվս այստեղ՝ Կոմսոմոլի այգի:

* * *

Այն պահից, ինչ ես թաքնվել էի ծառի ետև, անցել էր երևի տասնհինգ-քսան րոպե: Սաքոն փչեց վերջին կամերան, կապեց ծայրը թելով և, ուղղելով մեջքը, փնչացրեց.

— Վերջացրի... Կարող ենք ջուրն իջեցնել:

Այնպիսի հանդիսավոր լռություն տիրեց, կարծես ոչ թե մի հասարակ փչովի նավակ էր ջուր իջեցվելու, այլ մի օվկիանոսային «լայներ»: Եվ ես, որ եկել էի հենց այդ պահը տեսնելու, նույնպես ակամա դուրս եկա իմ թաքստոցից ու մոտեցա խմբին:

Ու այդտեղ հանկարծ հավաքվածներից մեկը, ծղոտե գլխարկով մի մարդ, հարցրեց.

— Սպասե՛ք, իսկ սա ի՞նչ թիակավոր անիվ է...

— Սա՞... — Սաքուլը ժպտաց, — սա մեր շարժիչն է:

— Ի՞նչ շարժիչ:

— Դե, մեր նավակը կարելի է շարժել թիակներով, բարեհաջող քամու դեպքում՝ առագաստով, բայց մենք որոշեցինք նաև հեծանիվ օգտագործել: Հանում ենք անիվները, շրջանակը ամրացնում ահա այդ բներում, շղթան միացնում այս ատամնավոր անիվի հետ ու պտտեցնում: Թիանիվը խփում է ջրին ու շարժում նավակը:

Այդ խոսքերն ինձ այնքան հուզեցին, որ ես, ամեն ինչ մոռացած, բոլորովին մոտեցա նրանց, որ տեսնեմ այդ հարմարանքը:

— Բա ո՞ւր է, ինչի՞ հեծանիվ չեք բերել, որ փորձեք, — հարցրեց ծղոտե գլխարկով մարդը:

— Հեծանիվ առայժմ չունենք, — հոգոցով պատասխանեց Սաքուլը:

Եվ այդտեղ ծղոտե գլխարկով մարդու հայացքն ընկավ ինձ վրա:

— Հրեն այն տղան հեծանիվ ունի, — ու դիմեց ինձ. — Լսի՛ր, տղա՛, կարելի՞ է քո հեծանիվի անիվները հանել ու փորձել սրանց նավակի վրա...

Ես ոչինչ չպատասխանեցի: Ինչ-որ մեծ գունդ եկել, դեմ էր առել կոկորդիս... Որովհետև նրանք վերջապես տեսան ինձ: Նայում էին լայն բացված աչքերով, ու ես սարսափով մտածում էի. «Հիմա ի՞նչ կլինի... Հիմա ի՞նչ կլինի...»

Բայց ոչինչ չեղավ: Նրանք չգոռացին. «Ա՛յ սա հենց այն դավաճանն է, որ թողեց, մեզնից հեռացավ... Թող կորչի ինքն էլ, իր հեծանիվն էլ...» Իսկ այն մարդը շարունակում էր դիմել ինձ.



— Հը՛, ի՞նչ ես ասում, կարելի՞ է, թե՞ չէ... Մի՛ վախի, հեծանիվիդ բան չի լինի, իսկ թե եղավ էլ՝ նորոգելը ինձ վրա...

Ես լուռ գլխով արեցի, թե՛ համաձայն եմ:

— Եկեք տարե՛ք, տղե՛րք, — ասաց մարդը Սաքոյին ու Սաքուլին: — Տեսնենք, իսկապե՞ս կաշխատի, թե՞ չէ...

Նրանք իրար նայեցին, ապա Սաքոն լուռ մոտեցավ, առավ հեծանիվն ու տարավ նավակի մոտ: Նա հանեց պայուսակից բանալին, քանդեց պտուտակները, մի կողմ դրեց անիվները, ապա սկսեց հարմարեցնել շրջանակը նավի վրա՝ ինչպես որ քիչ առաջ Սաքուլն էր նկարագրում: Քիչ հետո հեծանիվը ամուր նստած էր նավակի ետնամասում:

Նրանք երկուսով բռնեցին նավակի ծայրերից և իջեցրին լճակի վրա: Նավակը հանգիստ ճոճվում էր մակերեսին, և ես սպասում էի, թե հիմա նրանք կնստեն ու կքշեն... Բայց նրանք շրջվեցին ու ինձ էին նայում:

— Պատրաստ է, — փնչացրեց Սաքոն:

Ես չէի հասկանում, թե ինչ են ուզում դրանք ինձնից: Բայց ծղոտե գլխարկով մարդը, երևում է, գլխի էր ընկել:

— Ճիշտ են ասում, տղա՛: Քանի որ քո հեծանիվը նավակի վրա է, դու էլ գնա նրանց հետ... — Ու հրեց ինձ նավակի կողմը:

Ես լուսնոտի նման մոտեցա և կանգնեցի տախտակամածի վրա: Սաքոն ու Սաքուլը նույնպես թռան կողքս: Նավակը ճոճվում էր, բայց, չնայած երեքիս քաշին, այնքան էլ խորը չսուզվեց:

— Նստի՛ր, — Սաքուլը ցույց տվեց ինձ հեծանիվը: — Նստի՛ր ու պտտի՛ր...

Ես նստեցի ու սկսեցի պտտել ոտնակները: Թիանիվը չփչփացրեց ջրի մեջ, նավակը մի պահ վեր ու վար ճոճվեց, ապա առաջ ընթացավ...

Այո, նավակը լողում էր և այն էլ ինչպե՛ս... Նրա հիմնակմախքը թեթև էր ու այնպես ամուր էր նստած երկու լողաններին վրա, որ ոչ մի ալեկոծություն չէր կարող բաժանել նրանց իրարից: Նա ուներ կայմ դնելու տեղ և ղեկ, ուստի կարող էր շարժվել նաև առագաստով: Իսկ հարկ եղած դեպքում առագաստից կարելի էր վրան սարքել և տակը հանգիստ քնել...

Մի խոսքով, իմ հույսերն իզուր էին, այսպիսի նավակով անպայման կարելի էր ճանապարհորդել Սևանի վրա: Եվ նրանք կճանապարհորդեն: Իսկ ես կմնամ այստեղ մենակ:

* * *

Մենակ... Ես հենց առաջին օրվանից, երբ հեռացա նրանցից, մենակ էի: Իսկ նրանք, թեպետ փակված էին տանը, բայց մենակ չէին: Եթե մարդ գոնե մի լավ ընկեր ունի, նա երբեք մենակ չի զգում իրեն... Եվ նրա երեսին չեն ասի. «Դու ընկերություն անել չգիտես», չեն խուսափի նրանից... Իսկ հիմա նրանց ընկերների թիվը տասնյակների կհասնի: Միասին նավակներ կշինեն, իրար միտք կտան, կօգնեն... Հետո կգնան ճանապարհորդելու, հազար ու մի արկածի կհանդիպեն. փոթորկի, անձրևի, քամու... Գուցե ընտիպված լինեն իրար կյանք փրկել... Ու ետ կգան որպես իրար սիրող, հարգող, անբաժան ընկերներ...

Իսկ ե՞ս... Մի՞թե այսպես էլ պիտի վերջանա մեր ընկերությունը: Երբ ես ետ պահանջեցի իմ փողերը, նրանք բարկացած ասացին.

— Ա՛ռ ու գնա կորի... Ու հիշիր. մինչև ներողություն չխնդրես՝ քեզ հետ ընկերություն անողը չենք...

Այնպես որ ես գիտեի նրանց պայմանը: Եթե ուզում էի հինը վերականգնել, պիտի մեղա գայի: Եվ նրանք էլ, իհարկե, ամեն քայլափոխին պիտի ասեին ինձ. «Այն դո՞ւ չէիր, որ...» Մի խոսքով, ես պիտի դառնայի մեր մեջ ամենավերջինը, արհամարհված, որի խոսքը ոչ մի գին չունի... Իսկ արժե՞ այդպիսի գնով ընկերություն վերականգնել:

* * *

— Ի՞նչ ես գժի նման քշում, հրդեհից հո չե՞նք փախչում... — հանկարծ լսեցի ես Սաքոյի դժգոհ ձայնը:



Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Ես շուրջս նայեցի: Իսկապես, մտքերով տարված, ես այնքան արագ էի պտտում ոտնակները, որ քափ-քրտինք էի կտրել: Մենք հասել էինք լճի կենտրոնը:

— Ճիշտ է ասում, — հաստատեց ղեկի մոտ նստած Սաքուլը: — Էդպես իսկույն ուժասպառ կլինենք, հարկավոր է քշել հանգիստ ու միահավասար...

Ես սկսեցի ավելի դանդաղ պտտել, ու մենք նորից լռեցինք: Մյուս ափը հետզհետե մոտենում էր մեզ, և այնտեղ հավաքված երեխաների խումբը «ուռա» էր գոռում ու ձեռքերը թափահարում:

— Ո՞նց է լինելու ձեր բանը... — ասացի ես՝ ոչ մեկին չնայելով: — Հեծանիվի շարժիչ եք նախատեսել, իսկ ինքներդ հեծանիվ չունեք:

— Ո՞վ ասաց չունենք, — ծուռ ժպտաց Սաքուլը: — Ունենք...

— Ունե՞ք... Բա ո՞ւր է...

— Հրես, — Սաքոն ոտքով խփեց տակիս հեծանիվին: — Բա սա ի՞նչ է... Քշի՛, քշի՛...

Ես իսկապես մի պահ դադարել էի պտտելուց։ Ի՞նչ են ասում։ Այս հեծանիվը իրե՞նցն է… Չլի՞նի ուզում են տիրանան… Բայց հետևյալ ակընթարթին մտքումս ծագեց այն հարցը, որը ես պիտի վաղուց տված լինեի. սպասիր, իսկ ինչո՞ւ են սրանք այսքան մեծ նավակ սարքել… Իմ հեռանալուց հետո նրանց նավակին բավական էր և քսան կամերա. իսկ նրանք տեղադրել են երեսուն… Այսինքն, շինել են երեք հոգու համար… Եվ նախատեսել են նավակում հեծանիվ դնել, թեպետ իրենք հեծանիվ չունեն… Դե, իհարկե, նրանք նկատի են ունեցել հենց իմ հեծանիվը, իզուր չէ, որ նա այնքան հեշտ ու շուտ տեղադրըվեց նավակի վրա… Այսինքն, նախատեսել են, որ… ես իրենց հետ պիտի լինեմ… Եվ լողանի կողին գրած անունը նշանակում է ոչ թե Սաքո-Սաքուլ, այլ առաջվա նման Սարգիս-Սաքո-Սաքուլ…

Նորից ինչ-որ գունդ եկավ ու դեմ առավ կոկորդիս, չթողնելով, որ ասեմ տղաներին այն ամենը, ինչ պետք էր որ ասեի… Որ նրանք հիանալի տըղերք են, իսկ ես երևի անպետքի մեկն եմ… Բայց եթե նրանք ինձ ներեն, ես այլևս երբեք, երբեք այդպիսի բան չեմ անի, չեմ ձգտի առաջինը լինել, նազ ու տուզ անել… Որ հասկացել եմ, թե առանց ընկերների ապրել չի լինի, ու մինչև կյանքիս վերջը չեմ մոռանա այդ…

Ես մի կերպ կուլ տվեցի թուքս ու, այդ բոլորի փոխարեն, խզված ձայնով ասացի.

— Հիմա մենք երկու օդամուղ կունենանք… երկու անգամ շուտ կփչենք լողաններըը…

— Իհարկե, — ասաց Սաքուլը։ — Մենք քո օդամուղը հաշվի ենք առել…

— Ոհը՛ — հաստատեց Սաքոն։ — Ես մի լողանը կփչեմ, դուք երկուսով՝ մյուսը…

Մենք նորից լռեցինք, որովհետև այլևս ասելու բան չկար։ Պետք չէր ո՛չ ներողություն խնդրել, ո՛չ էլ բացատրվել։

— Լավ, բավական է, ետ դառնանք, — հանկարծ ասաց Սաքուլը։

— Ինչի՞, — զարմացա ես, — էլի քշենք։

— Դեռ կքշենք, — պատասխանեց նա։ — Իսկ հիմա դու կնստես տրամվայ, կգնաս մեր ջոկատավարի տունը և կասես, որ նավակը պատրաստ է, ջրի վրա է, թող գա իր աչքերով տեսնի։

Ես անվստահ հարցրեցի.

— Իսկ նա գիտի՞, որ ես էլ…

— Իհա՛րկե, դմբո՛, — Սաքոն ժպտաց, բամփեց թաթով գլխիս։ — Բա իզո՞ւր ենք մենք նավակը «Սաքսաուլ» կոչել…

Հետո նա ինձ պարզապես ցած գցեց հեծանիվից և նստեց տեղս։ Սաքուլը շրջեց ղեկը, և մենք արագ լողացինք դեպի այն ափը, որտեղից եկել էինք։

* * *

Ամռան սկզբին երևանում երբեք մառախուղ չի լինում։ Բայց երբ մենք մոտենում էինք ափին, այնտեղ կանգնած մարդիկ ինձ երևում էին մշուշի մեջ կորած…

Եվ ես անչափ երջանիկ էի, որ այդ ամռան օրը կոմերիտմիության անվան այգու վրա հանկարծ մշուշ էր իջել…

# ԱՊՐԻԼ

(«Տարվա ամիսներ» շարքից)

ՀԵՆՐԻԿ ԱՐԹՈՒՆՅԱՆ

Ես երգիչ եմ խատուտիկ,
Գարնան դեսպան արտուտիկ,
Բարդու վրա, կտցին՝ ծիլ,
Հանդի պահակ արագիլ,
Ես առու եմ ու վտակ,
Գլխիս՝ երկինքը գդակ,
Պաղ աղբյուր եմ բյուրեղյա,
Ծաղ եմ տալիս շափյուղա։
Ջեր ճամփեքին անսահման

Ցանում եմ մով յասաման,
Ժպտում եմ ձեզ իմ հստակ
Աչիկներով մանուշակ…
Ես դառնում եմ բիլ զեփյուռ,
Բույր ու բերկրանք համասփյուռ,
Ես բացում եմ ճանապարհ,
Որ աշխարհ գաս, ի՛մ եղբայր,
Մայի՛ս, կյանքի դրոշակ,
Ամեն քայլդ՝ հաղթանակ։

# ԱՆՁՆԱԿԱՆ ԳԱՂՏՆԻՔ



***Պիես մեկ գործողությամբ***

ԿԱՐԼՈՍ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՆՔ

ՎԻԳԵՆ
ԳԱԳԻԿ
ՎՌԱՄ ԵՆՈՔԻՉ
ՄԻԼԻՑԻԱՅԻ ԱՇԽԱՏԱԿԻՑՆԵՐ

## Պատկեր առաջին

Զբոսայգու ծառուղիներից մեկում Գագիկը կուչ է եկել նստարանին և ցածրաձայն հեկեկում է:

ԳԱԳԻԿ— (Հեկեկանքի միջից): *Չէ՛, ինչ ուզում է լինի, երբ հայրիկը գործուղումից վերադառնա, ես ամեն ինչ մեկ առ մեկ կպատմեմ նրան: Կասեմ՝ քո բացակայության ժամանակ մեր տան կարգապահությունը ընկել է... Իսկ երբ ցանկացել եմ կարգուկանոն սահմանելու համար Անահիտին պատժել, մայրիկը բարկացել է վրաս՝ ասելով՝ «Նա դեռ փոքր է»: Փո՜քր... ինչպե՜ս չէ, լեզուն հինգ մետր է:*

Գագիկը ցանկանում է գլուխը ավելի խորը թաղել ծնկների մեջ, բայց գլխարկը խանգարում է նրան: Գլխարկը նետում է մի կողմ ու ննջում:

Տարօրինակ շարժումներ անելով՝ ծառուղի է մըտնում Վիգենը:

ՎԻԳԵՆ— (Բռունցք արած ձեռքի բթամատը ուղղում է մոտակա ծառերից մեկին և այնպես է ձևացնում, որ իբր ատրճանակով սպառնում է) *Պարոն միլիոնատեր, կա՛մ ձեր կյանքը, կա՛մ հինգ հազար դոլլար... Մտածելու համար տալիս եմ ընդամենը տասնհինգ վայրկյան...* (Ծոծրակը քորելով դիմում է հանդիսականներին): *Այնպես պետք է խաղամ, որ սարսափից փշաքաղվեք: Լավ իմացեք, ես այլևս ձեզ համար այն Վիգեն Մարկոսյանը չեմ, որի ծնողին ամեն անգամ դպրոց են կանչում:* (Ձեռքերը դնում է անդրավարտիքի գրպանը և հպարտորեն կուրծքը դուրս ցցում): *Շուտով ես կինոաստղ պետք է դառնամ և արդեն ունեմ իմ նոր անունը. Վիգ-Մար, այսինքն՝ Վիգեն Մարկոսյան: Ծիծաղո՞ւմ եք, շա՛տ լավ, ժամանակը կգա՝ կտեսնեք...* (Հանկարծ նկատում է Գագիկին): *Յա՜, ա՜յ քեզ նորություն, բանն այնտեղ է հասել, որ գերազանցիկներն էլ են զբոսայգու նստարաններին թառում: Տեսնես գլխարկն ինչո՞ւ է նետել մի կողմ... Սպասիր ընկերոջս գլխին մի օյին խաղամ:* (Գրպանից հանում է մի քանի հատ մանր դրամ և զգուշորեն նետում Գագիկի գլխարկի մեջ: Անցնում է նստարանի հետևը ու ձեռքով խառնում Գագիկի մազերը):

ԳԱԳԻԿ— (Սթափվում է և շփոթված նայում շուրջը: Նկատում է գլխարկի մեջ եղած մանր դրամը): *Ա՞յս որտեղից...*

ՎԻԳԵՆ— (Դուրս գալով թաքստոցից): *Բարի անցորդներն են նետել:*

ԳԱԳԻԿ— (Գլխարկի միջի դրամը Վիգենին մեկնելով): *Վերցրո՛ւ և իսկույն չքվի՛ր այստեղից:*

ՎԻԳԵՆ— *Դե լա՜վ, լա՜վ, հնդկահավի նման մի՛ փքվիր, ես հենց այնպես, կատակի համար արի...*

ԳԱԳԻԿ— (Լուրջ): *Իսկ ես բոլորովին կատակելու տրամադրություն չունեմ:*

ՎԻԳԵՆ— *Ի՞նչ է պատահել:*

ԳԱԳԻԿ— *Գիտե՞ս ինչ, Վիգե՛ն, քո գործը չէ, թե ինչ է պատահել: Ամեն մարդ իր անձնական գաղտնիքն ունի...*

ՎԻԳԵՆ— *Պա՛հ, անձնական գաղտնիք: Շա՜տ պետք է, կարծես թե ես չունեմ... Պարզապես ուզում եմ իմանալ՝ ինչու ես տխուր, ուրիշ ոչինչ:*

ԳԱԳԻԿ— (Հառաչելով) *Այն օրվանից, ինչ հայրիկս մեկնեց գործուղման, մեր տան կարգապահությունն ընկավ... Իսկ երբ կարգուկանոն սահմանելու համար ցանկանում եմ Անահիտին ինչպես հարկն է...* (Կարճ դադարից հետո, զայրացած): *Գիտե՞ս ինչ, Վիգե՛ն, քո գործը չէ, թե ինչու եմ տխուր: Ամեն մարդ իր անձնական գաղտնիքն ունի:*

ՎԻԳԵՆ— (Ծիծաղելով): *Հասկանալի է, դու վախենում ես, որ ես փողը կարող եմ դասարանի տղաներին ու աղջիկներին պատմել, թե գերազանցիկ Գագիկ Հակոբյանը տանը իրեն կարգին չի պահում և այլն, և այլն... Ո՛չ, սխալվում ես: Դու ինքդ էլ շատ լավ գիտես, որ Վիգենը կյանքում ընկերոջը չի՛ դավաճանել և չի՛ էլ դավաճանի...* (Ինչ-որ տեղից լսվում է պաղպաղակ վաճառողի ձայնը): *Պաղպաղակ ուզո՞ւմ ես:*

ԳԱԳԻԿ— *Ո՛չ:*

ՎԻԳԵՆ— *Ինչու՞:*

ԳԱԳԻԿ— (Կեղծ): *Չեմ սիրում:*

ՎԻԳԵՆ— *Իսկ ես օրական ամենաքիչը երեք հատ խժռում եմ:* (Հեռանում է):

ԳԱԳԻԿ— (Ընդօրինակելով Վիգենին): *«Իսկ ես օրա-*

կան ամենաքիչը երեք հատ խմում եմ։ Գա՛հ, կարծես թե բարեգործություն է անում։ Եթե ես փող ունենամ, ոչ միայն երեք, այլ տասներեք հատ կարող եմ խմել։ Չէ՛, ինչ ուզում է լինի, երբ ծնողները գործուղումից վերադառնան, ես ամեն ինչ մեկ առ մեկ կպատմեմ նրանց։ Կասեմ՝ ձեր բացակայության ժամանակ մեր տան կարգապահությունը այն աստիճանի էր ընկել, որ նույնիսկ օրերով պաղպաղակի երեսը չէի տեսնում...

(Մի քանի հատ պաղպաղակ ձեռքին՝ ներս է մտնում Վիգենը)։

ՎԻԳԵՆ— (Ձեռքի պաղպաղակներից մեկը մեկնելով Գագիկին)։ Դե՛հ, Գագի՛կ ջան, վերցրո՛ւ, որ սկըսենք...

ԳԱԳԻԿ— (Հայացքը պաղպաղակից չկտրելով)։ Վիգե՛ն ջան, ասացի՝ չե՛մ սիրում, էլ ինչո՞ւ ես ստիպում։

ՎԻԳԵՆ— Է՛հ, ի՞նչ արած, ես չե՞մ թողնելու, որ փչանա։ (Ուտում է)։ Տեսնես աշխարհում պաղպաղակից լավ բան կա՞։

ԳԱԳԻԿ— Ես չգիտեմ կա՞, թե՞ ոչ, բայց... դու ընկերոջդ բոլորովին մոռացել ես։

ՎԻԳԵՆ— Ես մեղավոր չեմ, ասացի՝ կեր, նազ արեցիր...

ԳԱԳԻԿ— Չէ՛, Վիգե՛ն ջան, իմ ասածն ուրիշ բան է։ Այդքան շատ պաղպաղակը միանգամից ուտելուց հետո, անպատճառ կոկորդդ կցավի և դու ստիպված դասերից պետք է բացակայես։

ՎԻԳԵՆ— (Խորամանկելով)։ Իսկ հետո, թվաբանության ուսուցիչ ընկեր Նահապետյանը մեր դասարանի գերազանցիկներից որևէ մեկին կհանձնարարի ինձ հետ պարապել... Կարճ ասած, ընկերներիս համար ավելորդ գլխացավանք եմ դառնալու։

ԳԱԳԻԿ— Բա դա քի՞չ բան է։

ՎԻԳԵՆ— (Մի պաղպաղակ մեկնելով Գագիկին)։ Հանուն ընկերասիրության՝ գոնե այս մեկը։

ԳԱԳԻԿ— Դե որ խնդրում ես՝ ի՞նչ կարող եմ անել։

ՎԻԳԵՆ— Եթե ուզեմ՝ կարող եմ մեր դասարանի բոլոր տղաներին պաղպաղակով հյուրասիրել։

ԳԱԳԻԿ— Վիգե՛ն, ինչպես գիտես, փչող մարդկանց չեմ սիրում։

ՎԻԳԵՆ— Իսկ ես բոլորովին էլ չեմ փչում... (Գրպանից մի քանի թղթադրամներ է հանում)։ Ահա՛։



ԳԱԳԻԿ— (Զարմացած)։ Այդքան փող ո՞րտեղից քեզ։

ՎԻԳԵՆ— Գա՜հ, սա ի՞նչ է որ։ Երբ ժամանակը գա՝ ես մեր դպրոցի դիրեկտորից էլ ավել պետք է վաստակեմ... Այն ժամանակ ամեն տեղ ծաղիկներով ու ծափերով են դիմավորելու ինձ ու իմ անձնական ավտոմեքենան։ (Այնպես է ձևացնում, իբր ղեկի մոտ է)։ Արագորեն կսլանամ մեր դպրոցի շենքի մոտով և այնպիսի կեցվածք կընդունեմ, որ ընկեր Նահապետյանը...

ԳԱԳԻԿ— (Հեգնանքով)։ Վիգե՛ն ջան, խնդրում եմ մի պահ արգելակիր անձնական ավտոմեքենադ. կարևոր բան պետք է հարցնեմ։

ՎԻԳԵՆ— (Մեծահոգաբար)։ Խնդրե՛մ, խնդրե՛մ։

ԳԱԳԻԿ— Ախր այդ բոլորն ի՞նչ կապ ունի մոտիդ փողերի հետ։

ՎԻԳԵՆ— Այս փողը իմ առաջին վաստակն է, կամ ինչպես գրողներն են ասում՝ հոնորարը։

ԳԱԳԻԿ— Հոնորարն ի՞նչ է։

ՎԻԳԵՆ— Դե ինչպես ասեմ, որ հասկանաս։ Ենթադրենք, դու ոչ թե սովորական մարդ ես, այլ՝ գրող, նկարիչ կամ արտիստ, և ահա դրա համար քեզ... Դե ինչպես ասեմ, որ հասկանաս, մի խոսքով, վճարում են, որքան սիրտդ ուզի։

ԳԱԳԻԿ— Բայց, Վիգե՛ն ջան, դու ո՛չ նկարիչ ես և ո՛չ էլ՝ արտիստ։

ՎԻԳԵՆ— Նկարիչ չլինելը հասկացա, բայց ինչ վերաբերվում է արտիստին՝ դա արդեն սխալվում ես։

ԳԱԳԻԿ— Ոչինչ չեմ հասկանում։

ՎԻԳԵՆ— Պարզ է, որ չես հասկանա։ Դու՝ ո՞ւր, կինոստուդը՝ ո՞ւր, գանգստեր խաղալն՝ ո՞ւր...

ԳԱԳԻԿ— Գանգստերն ի՞նչ է։

ՎԻԳԵՆ— Դե ինչպե՞ս ասեմ, որ հասկանաս։ Գանգստերը՝ արտասահմանյան կինոնկարում խաղացող այն ճարպիկ հերոսն է, որը կարող է համարձակորեն կողոպտել ուզածդ միլիոնատերին կամ նրան, ում սիրտը ցանկանա... Իհարկե, գանգստեր խաղալուց ես որոշել եմ միայն միլիոնատերերին կողոպտել։ Գիտե՞ս ինչ ծույլ մարդիկ են դրանք. ամբողջ օրը պարապ-սարապ նստում են և այս ծառի ճյուղի հաստությամբ սիգարներ են ծխում։

ԳԱԳԻԿ— Միլիոնատերերի ծը-

խած հասու սիզարները ի՞նչ կապ ունեն քո կինոաստղ դառնալու հետ։
ՎԻԳԵՆ— Եթե չունենայի՝ չէի ասի... Շուտով ինքդ էլ կտեսնես։
ԳԱԳԻԿ— Ի՞նչ կտեսնեմ...
ՎԻԳԵՆ— Վռամ Ենոքիչն իր բերանով ասաց, որ...
ԳԱԳԻԿ— Վռամ Ենոքիչն ո՞վ է։

ՎԻԳԵՆ— Մոսկվայում ճանաչված կինոռեժիսյոր է։ Նոր կինոնկարահանումների կապակցությամբ եկել է Երևան։
ԳԱԳԻԿ— Նա քեզ ո՞րտեղից գիտի։
ՎԻԳԵՆ— Հիշո՞ւմ ես, սրանից մոտավորապես մեկ շաբաթ առաջ, ընկեր Նահապետյանը անմեղ տեղը ինձ դասից դուրս արեց...
ԳԱԳԻԿ— Ճիշտ չես ասում, բոլորովին էլ անմեղ տեղը չէր։ Տնային աշխատանքը չէիր կատարել՝ մեկ. դասի ժամանակ այծի նման մկկացիր՝ երկու։ Քանոնով Աշոտի գլխին հարվածեցիր՝ երեք։ Հետո...
ՎԻԳԵՆ— Դե լա՛վ, լա՛վ... Մի փոքր քաղաքավարություն ունեցիր. ես բան եմ պատմում, իսկ դու ընդհատում ես։ Հա՛, ինչ էի ուզում ասել, հենց այդ օրն էր։ Դպրոցից դուրս եկա և, քանի որ դասերը վերջանալուն դեռ բավականին ժամանակ կար, նստեցի տրամվայ։ Հակառակի նման այդ օրը գրպանումս ոչ մի կոպեկ փող չկար... Երբ տոմսավաճառը մոտեցավ ինձ, ստիպված ստեցի, որ իբր գրպանս ծակվել և ունեցածս դրամը այնտեղից... Դեռ խոսքս չվերջացրած, տոմսավաճառը խեթ-խեթ նայեց ինձ և ասաց, որ ես անամոթաբար ստում եմ, ուրիշ ոչինչ... Դեռ նոր էի ուզում կարմրել, երբ հանկարծ վայելուչ արտաքինով մի քաղաքացի բաՆ կոպեկանոցը մեկնելով տոմսավաճառին՝ ասաց. «Տղային մի՛ վիրավորիր, նա ստախոս չէ... Անա այս փողը նրա գրպանից ընկավ»... (Կարճ դադարից հետո)։ Գիտես ի՞նչ, Գագի՛կ, քո գործը չի, թե ինչպես եմ ծանոթացել Վռամ Ենոքիչի հետ։ Ամեն մարդ իր անձնական գաղտնիքն ունի։
ԳԱԳԻԿ— (Դադարից հետո)։ Վիգե՛ն։
ՎԻԳԵՆ— Ի՞նչ։
ԳԱԳԻԿ— Քո կարծիքով մեր դասարանում ամենից շատ ո՞ւմն եմ սիրում։
ՎԻԳԵՆ— Վարդանյան Հրանուշին։
ԳԱԳԻԿ— (Այլայլված)։ Խոսքս տղաների մասին է։
ՎԻԳԵՆ— Չգիտեմ։
ԳԱԳԻԿ— Իսկ ես գիտեմ։
ՎԻԳԵՆ— Ո՞ւմ։
ԳԱԳԻԿ— Քեզ։
ՎԻԳԵՆ— Փչում ես։
ԳԱԳԻԿ— Ազնիվ խոսք։
ՎԻԳԵՆ— Եթե ուզում ես ճիշտն իմանալ, ես այնքան էլ վատ տղա չեմ։
ԳԱԳԻԿ— Վիգեն...
ՎԻԳԵՆ— Ի՞նչ, Գագի՛կ ջան։
ԳԱԳԻԿ— Ուզում եմ մի բան խնդրել, բայց վախենում եմ մերժես։
ՎԻԳԵՆ— (Ձեռքը մոտեցնելով գրպանին)։ Ի՞նչ է, ես էլ հո ժլատ Վահակը չե՞մ։ Ասա՝ ինչքա՞ն է պետք։
ԳԱԳԻԿ— Չէ, իմ խնդրածն ուրիշ բան է... Ինձ էլ ծանոթացրու Վռամ Ենոքիչի հետ։ Ես էլ եմ ուզում կինոաստղ դառնալ։
ՎԻԳԵՆ— Գագի՛կ ջան, քեզանից կինոաստղ դուրս չի գա։
ԳԱԳԻԿ— Ինչո՞ւ։
ՎԻԳԵՆ— Որովհետև դու գերազանցիկ ես։
ԳԱԳԻԿ— Է՛հ, հետո ի՞նչ։
ՎԻԳԵՆ— Գերազանցիկներն իրենց դասերից դուրս ուրիշ ոչնչով չեն հետաքրքրվում։ Իսկ կինոաստղ դառնալու համար պետք է վատ սովորող, ճարպիկ ու կռվարար տղա լինես, որ կարողանաս ամեն տեսակ դժվարություններ հաղթահարել։
ԳԱԳԻԿ— Եթե հիշում ես, անցյալ տարի ալպինիստական արշավի ժամանակ, ամենից առաջ ես ու Աղասին բարձրացանք լեռան կատարը։ Այնպես որ քո կարծիքը սխալ է, կինոաստղ դառնալու համար բոլորովին էլ պետք չի...
ՎԻԳԵՆ— Սպասի՛ր, սպասի՛ր, ի՞նչ ես վրա տալիս։ Հասկացի՛ր, դա ոչ թե իմ կարծիքն է, այլ՝ Վռամ Ենոքիչի։
ԳԱԳԻԿ— Գիտե՞ս ինչ, Վիգե՛ն, անազնիվ բան ես անում, երբ ճանաչված կինոռեժիսյորի անունից...
ՎԻԳԵՆ— Ուրեմն չե՞ս հավատում։
ԳԱԳԻԿ— Այո՛, չե՛մ հավատում։
ՎԻԳԵՆ— Ուրեմն սո՞ւտ եմ խոսում։

ԳԱԳԻԿ— Այո՛, սո՛ւտ ես խոսում:
ՎԻԳԵՆ— Ոչ, ոչ սուտ եմ խոսում, գնա ինքդ քեզ համար կինոաստղ դարձիր:
ԳԱԳԻԿ— Եվ կդառնամ, ինձ պետք չէ ստախոս ընկերոջ օգնությունը:
ՎԻԳԵՆ— (Բարձրաձայն ծիծաղելով): Կինոաստղ դարձողի՜ն նայիր: Կարծում է թվաբանական խնդիր է, որ աչքերը փակ լուծի:
ԳԱԳԻԿ— (Հեռանում է: Մի քանի քայլ անելուց հետո, շրջվում է Վիգենի կողմը): Հյուրասիրած պաղպաղակի արժեքը վաղը դպրոցում կստանաս...



ՎԻԳԵՆ— (Հանկարծակի): Գագի՛կ: (Վիգենը մոտենում է նրան): Ինչո՞ւ ես վիրավորում, մի՞թե ես ժլատ Սպիտակն եմ...
ԳԱԳԻԿ— Ավելի վատ, քան Սպիտակը. նա երբեք ընկերոջը չի ծաղրել և ոչ էլ ճանաչված կինոռեժիսյորի անունից սուտ է խոսել:
ՎԻԳԵՆ— Ազնիվ խոսք, ես բոլորովին սուտ չեմ խոսել... Իսկ ինչ վերաբերում է քեզ ծաղրելուն՝ դա արդեն հենց այնպես, կատակի համար: Եթե ուզում ես՝ կարող եմ ներողություն խնդրել: (Գագիկը լուռ է): Ինչո՞ւ չես խոսում: Այսօր երեկոյան հանդիպելու եմ Վռամ Ենոքիչին:
ԳԱԳԻԿ— (Ցածրաձայն): Որտե՞ղ:
ՎԻԳԵՆ— Հենց այս ծառուղում... Տեսնո՞ւմ ես, եթե մեկ ուրիշը լիներ, ոչինչ չէի ասի, մանավանդ Վռամ Ենոքիչը ինձ նախապես զգուշացրել էր, որ մեր հանդիպման մասին ոչ ոքի չասեմ...
ԳԱԳԻԿ— Ինչո՞ւ:
ՎԻԳԵՆ—Որպեսզի հանկարծակիի գան, և երբ կինոաստղ դառնամ, բոլորը զարմանքից շշմեն...
ԳԱԳԻԿ— Ճիշտն ասած, ես էլ կշշմեի:
ՎԻԳԵՆ— Այ տեսնո՞ւմ ես, Գագի՛կ. չնայած ամեն մարդ իր անձնական գաղտնիքն ունի, բայց ես ոչինչ չթաքցրի քեզանից: Իսկ դու անմեղ տեղը ինձ ստախոս անվանեցիր:
ԳԱԳԻԿ— (Մտերմաբար): Լա՛վ, ոչի՜նչ, բարկացած էի, սխալվեցի: (Դադարից հետո): Վիգե՛ն ջան, ի՜նչ կլինի, որ ինձ էլ ծանոթացնես Վռամ Ենոքիչի հետ: Ես էլ եմ ուզում կինոաստղ դառնալ...
ՎԻԳԵՆ— (Ձեռքը պարզելով Գագիկին): Թո՛ղ դա, համաձայն եմ: Շուտով ամբողջ քաղաքը ճանաչելու է մեզ:

Վ ա ր ա գ ո ւ յ ր

## Պատկեր երկրորդ

Փոքրիկ սենյակ: Մի անկյունում կուչ է եկել Գագիկը, իսկ մյուսում՝ Վիգենը: Վիգենը հանկարծակի վեր է թռչում տեղից և զայրացած դիմում Գագիկին:
ՎԻԳԵՆ— Այս բոլորը քո պատճառով եղավ: Անընդհատ նվնվում էիր... «Վիգե՛ն ջան, ես վախենում եմ: Վիգե՛ն ջան, ինձ թվում է մենք իսկական գողություն ենք անում: Վիգե՛ն ջան, եթե հանկարծ պահակը բռնի, ի՞նչ պետք է անենք...» Այնքան նվնվացիր, նվնվացիր, որ ցուցափեղկի հսկայական ապակին կոտրվեց... Ինչ լավ է, որ ժամանակին ետ ցատկեցինք, թե չէ ո՞վ գիտի՝ ինչ կպատահեր մեզ...
ԳԱԳԻԿ— Վիգե՛ն... (Վիգենը դեմքով շրջվում է դեպի պատը և չի պատասխանում): Վիգե՛ն...

*ՎԻԳԵՆ— Էլի՞ նվնվոցդ գցեցիր։*

*ԳԱԳԻԿ— Հիմա ի՞նչ պետք է անեն մեզ։*

*ՎԻԳԵՆ— Ովքե՞ր։*

*ԳԱԳԻԿ— Միլիցիայի աշխատակիցները։*

*ՎԻԳԵՆ— Ոչ թե միլիցիայի աշխատակիցները, այլ միլիցիայի ղեկավար արտիստները...*

*ԳԱԳԻԿ— Ինձ թվում է՝ նրանք իսկական միլիցիայի աշխատակիցներ են։*

*ՎԻԳԵՆ—* (Զայրացած)։ *«Ինձ թվում է, ինձ թվում է»... Քեզ շատ բան է թվում։ Չե՞ս հիշում՝ ինչ ասաց Վրամ Եռոքիչը։*

*ԳԱԳԻԿ— Ասաց՝ խանութի ցուցափեղկի մոտ պետք է գործեք լուռ ու արագ, իսկական գանգստերների նման...*

*ՎԻԳԵՆ— Ո՛չ, դա չեմ ասում... Եթե հիշում ես, նա այսպես ասաց. «Տղանե՛ր, ձեր արածը շատ հեռու է գողությունից լինելուց... Հետագա կինոնկարահանումների համար նախնական փորձեր ենք կատարում, որ գանգստեր խաղալիս դժվարություններ առաջ չգանգնեք...»*

*ԳԱԳԻԿ— Իսկ եթե մեզ հաջողվեր գողանալ խանութի ցուցափեղկում եղած թանկագին իրերը՝ Վրամ Եռոքիչն ի՞նչ պետք է աներ այն։*

*ՎԻԳԵՆ— Մի՞թե պարզ չի։ Նորոված ապակու արժեքի հետ միասին վերադարձնելու էր խանութին։*

*ԳԱԳԻԿ— Իսկ խանութի դիրեկտորը նախապես գիտե՞ր այդ մասին։*

*ՎԻԳԵՆ— Ինձ՞ րկե, գիտեր... Եթե ուզում ես ճիշտն իմանալ, դա ինձ ամենևին էլ չի հետաքրքրում։ Հիմա ինձ ամենից շատ հետաքրքրում է այն, թե ինչ պատասխան պետք է տանք Վրամ Եռոքիչին... Կասի՝ մի սրա՞նց նայեք, կինոաստղ են ուզում դառնալ, բայց չկարողացան մի հասարակ ցուցափեղկ էլ կոտրատել։* (Հառաչում է)։ *Մնաս բարով, կինոաստղ Վիգ-Մար։ Առաջվա նման դառնալու ես մի սովորական Վիգեն Մարկոսյան, որն իր կամքին հակառակ, պետք է նորից վերջին շարքում և տհաճությամբ լսի խառն տասնորդական կոտորակների մասին...*

Բացվում է սենյակի դուռը։ Ներս են մտնում երկու միլիցիոներ։

*1-ԻՆ ՄԻԼԻՑԻՈՆԵՐ— Ընկե՛ր պետ, ահա սրա՛նք են հանցագործները։*

*ՎԻԳԵՆ—* (Համարձակ)։ *Հավատացնում եմ ձեզ, որ այս ձախորդության պատճառը Գագիկն էր... Այնքան նվնվաց, նվնվաց, որ շփոթվեցի... Առաջին անգամը չի, որ գանգստեր եմ խաղում։ Այդ մասին Վրամ Եռոքիչն էլ շատ լավ գիտի։*

*2-ՐԴ ՄԻԼԻՑԻՈՆԵՐ— Վրամ Եռոքիչն ո՞վ է։*

*ՎԻԳԵՆ—* (Վիրավորված արժանապատվությամբ)։ *Հետո ի՞նչ, որ այս անգամ բախտներս չբերեց, ուրեմն պետք է ծաղրե՞ք։* (Գագիկին)։ *Իբր Վրամ Եռոքիչին չեն ճանաչում...*

*2-ՐԴ ՄԻԼԻՑԻՈՆԵՐ— Լսի՛ր, տղա՛, քեզ հիմարի տեղ մի՛ դիր. գրանով հանցանքդ չե՛ս թեթևացնի։*

*ՎԻԳԵՆ—*
*ԳԱԳԻԿ—* *Ի՞նչ հանցանք։*

*2-ՐԴ ՄԻԼԻՑԻՈՆԵՐ— Բանից պարզվում է՝ սրանք մոլորված նապաստակներ չեն։* (Գագիկին)։ *Դո՞ւ էլ չես ասի, թե ով է Վրամ Եռոքիչը։*

*ԳԱԳԻԿ— Մոսկվայի հայտնի կինոռեժիսյորներից է։*

*2-ՐԴ ՄԻԼԻՑԻՈՆԵՐ— Ինչպես երևում է, սրանց հետ լուրջ պետք է խոսել։*

Ճնչասպառ ներս է ընկնում 3-րդ միլիցիոները և 2-րդ միլիցիոների առջև պատվի բռնելով՝ զեկուցում։

*3-ՐԴ ՄԻԼԻՑԻՈՆԵՐ— Ընկե՛ր պետ, դեպքի վայրից 94 մետր հեռավորության վրա հայտնաբերել ենք մի կասկածելի ավտոմեքենա և փորձել հետ բերել...*

*2-ՐԴ ՄԻԼԻՑԻՈՆԵՐ— Նե՛րս բերեք։*

3-րդ միլիցիոները դուրս է գնում և մի փոքր անց ներս է բերում՝ սև ակնոցով, վայելուչ արտաքինով մի քաղաքացու։

*ՎԻԳԵՆ—*
*ԳԱԳԻԿ—* (Ուրախացած)։ *Վրամ Եռոքի՜չ։*

Վրամ Եռոքիչը ճարպիկ ոստյունով ուզում է դուրս փախչել, բայց դռան վրա կանգնած հաղթամարմին միլիցիոները բռնում է նրան ու հրում ներս։

*2-ՐԴ ՄԻԼԻՑԻՈՆԵՐ—* (Ուշադիր զննելով Վրամ Եռոքիչին)։ *Մեր վերջին հանդիպումից հետո, բավականին փոխվել ես... Եթե կարողանայիր աչքերիդ նման՝ այտիդ վրայի սպին էլ թաքցնել, ոչ միայն այս անմեղ երեխաներին, այլև ինձ՝ քո վաղեմի ծանոթին էլ, շփոթության մեջ կգցեիր...*

*ՎԻԳԵՆ— Ինչո՞ւ չեք խոսում, Վրա՛մ Եռոքիչ։*

*2-ՐԴ ՄԻԼԻՑԻՈՆԵՐ— Խնայում է ձայնը, որպեսզի մեղադրական ծանոթ աթոռին նստելու ժամանակ ասելու բան ունենա։*

**Վ ա ր ա գ ո ւ յ ր**

*Կարդա այս գիրքը*

## «ՀՐԱՇԱԳՈՐԾ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐ»

Խստաշունչ ձմեռ էր:

Ցուրտ, աղքատիկ սենյակում, հին մահճակալին գամված՝ մեռնում էր մի թշվառ ծերունի: Նրան լքել էին բոլոր ծանոթներն ու բարեկամները: Միայն մի հավատարիմ ընկեր էր մնացել, որը հեռավոր քաղաքում իր ընտանիքը թողած՝ եկել էր խնամելու իր միայնակ, մահամերձ բարեկամին:

Հիվանդը պառկած տեղում շարժվեց: Թույլ, բեկբեկուն ձայնով նա դիմեց ընկերոջը.

— ...Երկրորդ խնդրանքս, Հա՛նս... խնդրում եմ այրես իմ բոլոր գրագրությունները, օրագրերը անտիպ նյութերը, գրքերը, որոնց լուսանցքներում, նշումներ եմ արել: Մի խոսքով՝ ամբողջ արխիվը, առանց մնացորդի...

Ընկերն առարկեց: Չէ՞ որ այդ ամենը հարստացնելու էր մարդկային գիտությունը: Ապագա սերունդները այդ փաստաթղթերով էին իմանալու նրա կյանքի ու աշխատանքի հետ կապված մանրամասնությունները: Ի՞նչ պատճառ կար այդ կարևոր թղթերը կրակին հանձնելու:

Հիվանդը մնաց անդրդվելի: Ընկերոջ թախանձանքին տեղի տալով, նա վերջապես հայտնեց գաղտնիքը: Գերմանական կայսրությունը ուզում էր նրա գիտական հայտնագործություններն օգտագործել ռազմական նպատակներով, պատրաստել ահավոր զենք... Իսկ ինքը տարիներ շարունակ տքնել էր, զոհել անձնական երջանկությունը ոչ թե չարիք, այլ համամարդկային բարիք ստեղծելու նպատակով: Նա իր գյուտերով միայն ձգտում էր թեթևացնել մարդկության տառապանքները...



ՎՐՈՒՅՐ ՓԵՆԵՍՅԱՆ




Այդ հիվանդ ծերունին աշխարհահռչակ ֆիզիկոս Վիլհելմ Ռենտգենն էր, որի անունով էլ կոչվում են բոլորին հայտնի հրաշագործ ճառագայթները:

Իսկ թե մարդկության մեծագույն բարերարներից մեկն ինչո՞ւ էր մեռնում ծայրահեղ աղքատության մեջ, ինչո՞ւ էր մոռացության մատնվել, այդ մասին հանգամանորեն կիմանաք, եթե կարդաք Վրույր Փենեսյանի աշխույժ ու կենդանի լեզվով գրած «Հրաշագործ ճառագայթներ» գիրքը:

Այս գիրքը հետաքրքիր երևույթ է նաև այն իմաստով, որ մեծ ֆիզիկոսի կյանքին ու գործունեությանը նվիրված գեղարվեստական առաջին գործն է, միակը իր տեսակի մեջ:

Կարդացե՛ք այս լավ գիրքը: Դուք ավելի խոր հարգանքով կլցվեք այն մարդու նկատմամբ, որի գյուտից այսօր օգտվում է ամբողջ աշխարհը:

**Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ**

---

## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

### «ՊԻՈՆԵՐ» № 1

*«ՋԱՐՄԱՆԱԼԻ ԺԱՄԱՑՈՒՅՑԸ» Աշակերտը սլաքները սխալ էր հագցրել. րոպեացույց սլաքը՝ ժամը ցույց տվող սլաքի տեղը և ընդհակառակը: Հետևապես մեծ սլաքն սկսեց գանդաղ պտտվել, իսկ փոքրը՝ արագ: Առաջին անգամ աշակերտը վերադարձավ ժամացույցը ուղիղ 6-ի վրա դնելուց 2 ժամ 10 րոպե հետո: Մեծ սլաքը պտտվելով փոքրի արագությամբ, անցել էր 12 թվանշանից մինչև 2-ը, իսկ փոքրը պտտվելով րոպեացույց սլաքի արագությամբ, կատարել էր երկու լրիվ պտույտ և 10 րոպե: Այդպիսով, ժամացույցը այդ րոպեին ցույց էր տալիս ճիշտ ժամանակը:*

*Դժվար չէ նաև հաշվել, որ հաջորդ առավոտ աշակերտը եկավ իր ուղղած սկզբնական ժամանակից 13 ժամ 5 րոպե հետո: Մեծ սլաքը այդ ժամանակամիջոցում անցել էր 13 ժամ և հասել 1-ին, իսկ փոքր սլաքը կատարել էր տասներեք լրիվ պտույտ և 5 րոպե, հասնելով 7-ին:*

*Երկու դեպքում էլ այնպես էր զուգադիպել, որ ժամացույցը ճիշտ էր ցույց տալիս ժամանակը:*

### «ՇԱԽՄԱՏԱՅԻՆ ԽՆԴԻՐՆԵՐ» (ԼՈՒԾՈՒՄՆԵՐԸ)

№ 1
1. Թ b8—b3 Ա e4:f5
2. Թ b3—e6 x
1. . . . . Ն c5:f5
2. d2—d3 x
1. . . . . Ն c5—c6
2. Թ b3—d5 x
1. . . . . Թ a3:b3
2. Ձ d7—c5 x
1. . . . . Ձ d1—c3
2. Թ b3—c2 x

№ 2
1. Թ e1—e5 Ա e8:f8
2. Թ e5—h8 x
1. . . . . Ա e8:d8
2. Թ e5—b8 x

№ 3
1. Ձ d5—b4 a3—a2
2. Փ h5—e2 de
3. Ձ b4—f2 x

№ 4
1. Փ e1—g3 h3—h2
2. Փ g3—f2 ef
3. Ա f1:f2 x

№ 5
1. Ձ e4—e3 a3—a2
2. Ձ c3—e2 de
3. Ա c1—c2 x

### ՃԻՇՏ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ԵՆ՝

*Վլադիմիր Սարգսյանը (Ստեփանավան), Գոհար Մեղոյանը (Կիրովական), Վալերիկ Արեւլյանը (Ախալցխա), Նորիկ Ղազարյանը (Լենինական) և ուրիշները:*



**Բաժինը վարում է պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ**

# ՔԱՐՏՈՒՂԱՐԸ

Կենդանաբանական այգում հանդիպեցի մի ծանոթի՝ կենդանաբան Արամյանին:

— Եկել ես քարտուղարի՞ն տեսնելու, — մի քանի հարցուփորձից հետո. ասաց նա:

— Ի՞նչ քարտուղար, — զարմացա ես, —երեխային բերել եմ զբոսանքի:

— Դու չե՞ս լսել, որ մենք մի զույգ քարտուղար ենք ձեռք բերել Հարավային Աֆրիկայից:

— Քարտուղա՞ր... Աֆրիկայից. տարօրինակ բաներ ես խոսում, — կմկմացի ես:

— Ա՜խ, դու չհասկացա՞ր, թե ինչ քարտուղարի մասին եմ խոսում: Լավ, հետևիր ինձ, հիմա կհասկանաս, —ավելացրեց նա ու, ինձ թևանցուկ անելով, տարավ դեպի քարքարոտ ու ամայի սարալանջը և, փշալարե ցանկապատի մոտ կանգնելով, շշուկով ասաց.—Նայիր այն կողմը, միայն առանց աղմուկի:

Ես աչքերով մարդ էի որոնում, բայց հայացքս կանգ առավ մի խոշոր թռչունի վրա: Նա մոտ մետր ու կես երկարությամբ, փոքր գլխով, սիրունիկ աչքերով, շատ ուշագրավ թռչուն էր: Սրունքները բավականին երկար էին ու լերկ, իսկ ազդրից սկսվող փետուրները բարձրանալով խտանում էին ու ասես կարճ անդրավարտիք կազմում:

— Ա՜յ քեզ քարտուղար: Ավելի հարմար անուն չէր կարելի տալ:

— Գլխի երկար փետուրների փունջը նկատու՞մ ես: Ասես նոր ավարտել է գրագրությունը և փետուրե գրիչը խոթել ականջի հետևը: Այս խոշորը էգն է, իսկ այն փոքրը՝ արուն:

Ինձ գրավեցին այդ թռչունները: Թեև նրանց փետուրները չունեին մյուս թռչունների գունագեղությունը. բայց դրանց դասավորությունը և մարմնի կառուցվածքն ու հպարտ կեցվածքը շատ ուշագրավ էին: Քարտուղարը նման էր կարճ անդրավարտիքով, գորշագույն ֆրակով. գլուխը հպարտ վեր պահած փոքրիկ տղամարդու:

— Ցերեկային գիշատիչ թռչունների ընտանիքի առաջին ներկայացուցիչը սա է՝ քարտուղարը, որի հայրենիքը Աֆրիկան է:

— Մի՞թե այս հսկայական այգում ավելի հարմար տեղ չկար, որ այս քարքարոտ վայրն եք հատկացրել:

— Սրանց համար ամենահարմար տեղը սա է. որովհետև տափաստանային կենդանիներ են, անտառ ու ծառ չեն սիրում: Այս քարերի արանքում վայրի օձեր ու մկներ շատ կան, որոնք վնասակար են այգու բնակիչների համար. այդ պատճառով էլ գնեցինք քարտուղարներին, որ մեզ ազատեն վնասատուներից: Սրանց հայրենիքում հաճախ տներում ու բակերում վարժեցրած քարտուղար են պահում, որպեսզի ազատվեն վնասակար օձերից ու մկներից, — բացատրեց Արամյանը և կարճ լռությունից հետո շարունակեց. — Ռազմաշունչ թռչուններ են: Մի զույգն զբաղեցնում է հսկայական տարածություն, և մեծ պատերազմ է սկսվում, երբ այդ տարածության վրա մի այլ զույգ է հայտնվում: Հատկանշական է սրանց մի սովորությունը. անձրևային եղանակների նախօրյակին, երբ հրդեհվում են տափաստանները և բոցից ու ծխից ահաբեկված կենդանիները խուճապի են մատնվում, քարտուղարն իր հպարտ քայլերով շտապում է դեպի հրդեհը՝ խուճապահար կենդանիների մեջ առատ կեր գտնելու համար: Քարտուղարն անչափ շատակեր է, կարելի է ասել, անկուշտ կենդանի է: Չափազանց շատ ուտելուց հետո, տասնյակ ժամերով պառկում է մի ապահով տեղ ու հանգստանում:



Այդ խոսակցության ընթացքում թռչուններից մեկը մոտեցել էր քարակույտին ու մարտական դիրք ընդունել:

— Օձ է գտել: Այժմ հետաքրքիր տեսարան կսկսվի, — ասաց Արամյանը:

Քարտուղարը՝ գլուխը բարձր, փետուրները ցցած, հպարտ ու ինքնավստահ կանգնել և ուշադիր նայում էր մի քանի քայլ հեռու գտնվող թունավոր իժին: Հանկարծ մի թեթև թռիչքով հարձակվեց նրա վրա, բայց հարվածը վրիպեց: Իժը զայրույթից

գլարվեց, գլուխն սպառնագին բարձրացրեց, երկծայր լեզուն արագ շարժելով՝ ֆշշաց, նույնիսկ հարձակման փորձ կատարեց, իսկ քարտուղարն ինքնավստահ նայեց նրան, մի քանի քայլ նահանջեց, ապա թափով հարձակվեց սողունի վրա և ոտքով այնպես հարվածեց, որ իժը ջախջախված փռվեց գետնին:

— Զափազանց ուժեղ է սրանց ոտքի հարվածը,— բացատրեց Արամյանը, — մի հարվածով ջարդում են կրիայի զրահը:

— Քեռի՛, մի՛ թողեք, օձի գլուխն էլ է կուլ տալիս, կթունավորվի, — անհանգստացավ տղաս:

Ուղիղն ասած, ես էլ անհանգստացա, բայց Արամյանը բացատրեց, որ այդ թռչունները բազմաթիվ օձեր են ճաշակել, սակայն միշտ ողջ են մնացել:

— Իրոք, լա՜վ ռազմիկ է քարտուղարդ, —ծիծաղեցի ես, կրկին անգամ նայելով այդ հմտիչ թռչունի պիրկ ու հպարտ կեցվածքին:

*ՖԼՈՐԱ ԱՂԱՍԱՐՅԱՆ*

ՈՒՂՏԸ՝ ՍԱՆԴՈՒՂՔ

Ադենում հեռախոսային գծերը վերանորոգելիս սանդուղք չեն օգտագործում: Այդ նպատակի համար ուղտն ավելի հարմար է:

ԶԱՆԳ — ԹՌՉՈՒՆԸ

Ամենաբարձր ձայն ունեցող թռչունը համարվում է «զանգը» (խազմարինիկուս), որըն ապրում է Բրազիլիայի անտառներում: Երբ արևն ըսկըսում է անխնա այրել և բոլոր կենդանի արարածները պա-



պանձվում են շոգից, կեռնեխի մեծությամբ, գունագեղ փետուրներով այդ թռչունը երգում է ավելի մեծ ոգևորությամբ: Նրա ձայնը շատ է հիշեցնում զանգի ձայնը և լսվում է մինչև երեք կիլոմետր հեռավորության վրա:

## ՀԱՆՁՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ ԿԱՏԱՐՈՂ ՓԻՂԸ

*Հնդկաստանի Պոնդիշերի քաղաքում սովորություն կա փղերին տալ փոքրիկ հանձնարարություններ: Երբ լավ են հասկացնում, խելացի կենդանիները կարողանում են ինքնուրույն կերպով շատ լավ կատարել տրված հանձնարարությունը:*

*Մի անգամ փղերից մեկին հանձնարարել էին մի ծակված կաթսա տանել կաթսայագործի մոտ վերանորոգելու համար: Փիղըն սպասեց մինչև վարպետն ավարտեց իր աշխատանքը և ետ բերեց կաթսան:*

*Սակայն վերանորոգումը վատ էր արված: Փղին ցույց տվեցին, որ կաթսան կաթում է, և նրան ետ ուղարկեցին վարպետի մոտ:*

*Փիղը գնաց, բայց ճանապարհին մտածեց, թե ինչպես հասկացնի, որ կաթսան ծակ է: Նա աղբյուրից կաթսան ջրով լցրեց և, կնճիթը բարձր պահած, կանգնեց կաթսայագործի գլխավերևն այնպես, որ ջրի շիթը թրջեց նրա երեսը:*

*Ասում են, որ կաթսայագործը հասկացավ փղին:*



## ՄԱԿԱՐՈՆԸ 750 ՏԱՐԵԿԱՆ Է

Իտալիայում որոշել են նշել մակարոնի ստեղծման 750 տարին: Ասում են, որ Սիցիլիայում պետք է կանգնեցվի հեղինակի հուշարձանը:



# ՔԱՐՏՈՒՂԱՐԸ




Բաժինը վարում է պրոֆ. ԳԻՏՈՒՆՅԱՆԸ

Կենդանաբանական այգում հանդիպեցի մի ծանոթի՝ կենդանաբան Արամյանին:

— Եկել ես քարտուղարի՞ն տեսնելու, — մի քանի հարցուփորձից հետո. ասաց նա:

— Ի՞նչ քարտուղար, — զարմացա ես, — երեխային բերել եմ գրոսանքի:

— Դու չե՞ս լսել, որ մենք մի զույգ քարտուղար ենք ձեռք բերել Հարավային Աֆրիկայից:

— Քարտուղա՞ր... Աֆրիկայից. տարօրինակ բաներ ես խոսում, — կմկմացի ես:

— Ա՜խ, դու չհասկացա՞ր, թե ինչ քարտուղարի մասին եմ խոսում: Լավ, հետևիր ինձ, հիմա կհասկանաս, — ավելացրեց նա ու, ինձ թևանցուկ անելով, տարավ դեպի քարքարոտ ու ամայի սարալանջը և, փշալարե ցանկապատի մոտ կանգնելով, շշուկով ասաց. — Նայիր այն կողմը, միայն առանց աղմուկի:

Ես աչքերով մարդ էի որոնում, բայց հայացքս կանգ առավ մի խոշոր թռչունի վրա: Նա մոտ մետր ու կես երկարությամբ, փոքր գլխով, սիրունիկ աչքերով, շատ ուշագրավ թռչուն էր: Սրունքները բավականին երկար էին ու լերկ, իսկ ազդրից սկսվող փետուրները բարձրանալով խտանում էին ու ասես կարճ անդրավարտիք կազմում:

— Ա՜յ քեզ քարտուղար: Ավելի հարմար անուն չէր կարելի տալ:

— Գլխի երկար փետուրների փունջը նկատու՞մ ես: Ասես նոր ավարտել է գրագրությունը և փետուրե գրիչը խոթել ականջի հետևը: Այս խոշորը էգն է, իսկ այն փո՛քրը՝ արուն:

Ինձ գրավեցին այդ թռչունները: Թեև նրանց փետուրները չունեին մյուս թռչունների գունագեղությունը. բայց դրանց դասավորությունը և մարմնի կառուցվածքն ու հպարտ կեցվածքը շատ ուշագրավ էին: Քարտուղարը նման էր կարճ անդրավարտիքով, գորշագույն ֆրակով, գլուխը հպարտ վեր պահած փոքրիկ տղամարդու:

— Ցերեկային գիշատիչ թռչունների ընտանիքի առաջին ներկայացուցիչը սա է՝ քարտուղարը, որի հայրենիքը Աֆրիկան է:

— Մի՞թե այս հսկայական այգում ավելի հարմար տեղ չկար, որ այս քարքարոտ վայրն եք հատկացրել:

— Սրանց համար ամենահարմար տեղը սա է, որովհետև տափաստանային կենդանիներ են, անտառ ու ծառ չեն սիրում: Այս քարերի արանքում վայրի օձեր ու մկներ շատ կան, որոնք վնասակար են այգու բնակիչների համար, այդ պատճառով էլ գնեցինք քարտուղարներին, որ մեզ ազատեն վնասատուներից: Սրանց հայրենիքում հաճախ տներում ու բակերում վարժեցրած քարտուղար են պահում, որպեսզի ազատվեն վնասակար օձերից ու մկներից, — բացատրեց Արամյանը և կարճ լռությունից հետո շարունակեց. — Ռազմաշունչ թռչուններ են: Մի զույգն զբաղեցնում է հսկայական տարածություն, և մեծ պատերազմ է սկսվում, երբ այդ տա-



րածության վրա մի այլ զույգ է հայտնվում: Հատկանշական է սրանց մի սովորությունը. անձրևային եղանակների նախօրյակին, երբ հրդեհվում են տափաստանները և բոցից ու ծխից ահաբեկված կենդանիները խուճապի են մատնվում, քարտուղարն իր հպարտ քայլերով շտապում է դեպի հրդեհը՝ խուճապահար կենդանիների մեջ առատ կեր գտնելու համար: Քարտուղարն անչափ շատակեր է, կարելի է ասել, անկուշտ կենդանի է: Չափազանց շատ ուտելուց հետո, տասնյակ ժամերով պառկում է մի ապահով տեղ ու հանգստանում:

Այդ խոսակցության ընթացքում թռչուններից մեկը մոտեցել էր քարակույտին ու մարտական դիրք ընդունել:

— Օձ է գտել: Այժմ հետաքրքիր տեսարան կսկսվի, — ասաց Արամյանը:

Քարտուղարը՝ գլուխը բարձր, փետուրները ցցած, հպարտ ու ինքնավստահ կանգնել և ուշադիր նայում էր մի քանի քայլ հեռու գտնվող թունավոր իժին: Հանկարծ մի թեթև թռիչքով հարձակվեց նրա վրա, բայց հարվածը վրիպեց: Իժը զայրույթից

գլորվեց. գլուխն սպառնագին բարձրացրեց, երկճյուղ լեզուն արագ շարժելով՝ փշշաց. նույնիսկ հարձակման փորձ կատարեց, իսկ քարտուղարն ինքնավստահ նայեց նրան, մի քանի քայլ նահանջեց, ապա թափով հարձակվեց օձի վրա և ոտքով այնպես հարվածեց, որ իժը ջախջախված փռվեց գետնին:

— Ջափազանց ուժեղ է սրանց ոտքի հարվածը,— բացատրեց Արամյանը, — մի հարվածով ջարդում են կրիայի զրահը:

— Քեռի՛, մի՛ թողեք, օձի գլուխն էլ է կուլ տալիս, կթունավորվի, — անհանգստացավ տղաս:

Ուղիղն ասած, ես էլ անհանգստացա, բայց Արամյանը բացատրեց, որ այդ թռչունները բազմաթիվ օձեր են ճաշակել, սակայն միշտ ողջ են մնացել:

— Իրոք, լա՜վ ռազմիկ է քարտուղարդ, —ծիծաղեցի ես, կրկին անգամ նայելով այդ հմտալիչ թռչունի պիրկ ու հպարտ կեցվածքին:

ՖԼՈՐԱ ԱՂԱՍԱՐՅԱՆ

# ՀԱՆՁՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ ԿԱՏԱՐՈՂ ՓԻՂԸ

*Հնդկաստանի Պոնդիշերի քաղաքում սովորություն կա փղերին տալ փոքրիկ հանձնարարություններ: Երբ լավ են հասկացնում, խելացի կենդանիները կարողանում են ինքնուրույն կերպով շատ լավ կատարել տրված հանձնարարությունը:*

*Մի անգամ փղերից մեկին հանձնարարել էին մի ծակված կաթսա տանել կաթսայագործի մոտ վերանորոգելու համար: Փիղն սպասեց մինչև վարպետն ավարտեց իր աշխատանքը և ետ բերեց կաթսան:*

*Սակայն վերանորոգումը վատ էր արված: Փղին ցույց տվեցին, որ կաթսան կաթում է, և նրան ետ ուղարկեցին վարպետի մոտ:*

*Փիղը գնաց, բայց ճանապարհին մտածեց, թե ինչպես հասկացնի, որ կաթսան ծակ է: Նա աղբյուրից կաթսան ջրով լցրեց և, կնճիթը բարձր պահած, կանգնեց կաթսայագործի գլխավերևն այնպես, որ ջրի շիթը թրջեց նրա երեսը:*



*Ասում են, որ կաթսայագործը հասկացավ փղին:*



ՈՒՂՏԸ՝ ՍԱՆԴՈՒՂՔ

Աղենում հեռախոսային գծերը վերանորոգելիս սանդուղք չեն օգտագործում: Այդ նպատակի համար ուղտն ավելի հարմար է:

## ԶԱՆԳ — ԹՌՉՈՒՆԸ

Ամենաբարձր ձայն ունեցող թռչունը համարվում է «զանգը» (խազմարինիկուս), որըն ապրում է Բրազիլիայի անտառներում: Երբ արևն սկսում է անխնա այրել և բոլոր կենդանի արարածները պաշտպանվում են շոգից, կեռնեխի մեծությամբ, գունագեղ փետուրներով այդ թռչունը երգում է ավելի մեծ ոգևորությամբ: Նրա ձայնը շատ է հիշեցնում զանգի ձայնը և լսվում է մինչև երեք կիլոմետր հեռավորության վրա:



## ՄԱԿԱՐՈՆԸ 750 ՏԱՐԵԿԱՆ Է

Իտալիայում որոշել են նշել մակարոնի ստեղծման 750 տարին: Ասում են, որ Սիցիլիայում պետք է կանգնեցվի հեղինակի հուշարձանը:





# Մանուկ շախմատիստի ԴՊՐՈՑ

## դասավանդում է աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ

*Երեխանե՛ր, շախմատի գծով աշխարհի չեմպիոն ՏԻԳՐԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԸ համաձայնեց մեր ամսագրի միջոցով շախմատի դասեր տալ ձեզ: Իսկ դուք գիտե՞ք, թե որքան ծանրաբեռնված է նա: Հեշտ բան չէ աշխարհի չեմպիոնի կոչումը ձեռքում պահելը: Չնայած դրան, նա ստանձնեց այս պարտականությունը: Նա այդ արեց, որովհետև շատ է սիրում ձեզ, շատ է ուզում, որ դուք զբաղվեք շախմատով, այդ իմաստուն խաղով:*

*Ովքեր ուզում են մասնակցել մանուկ շախմատիստների դպրոցի պարապմունքներին, թող նամակով ցուցակագրվեն, իսկ հետագայում, հետևողականորեն պարապեն:*

*Աշխատեցեք բաց չթողնել այս հազվագյուտ հնարավորությունը, երեխանե՛ր:*

*Շախմատին վերաբերվող ձեր նամակների վերևի աջ անկյունում գրեցեք «շախմատ»:*

Շախմատն ունի իր բազմադարյան պատմությունը, մի պատմություն, որը թեև վաղուց արդեն զբաղեցնում է շատ ու շատ հետազոտողների մտքերը, մինչև այժմ էլ մնում է որպես առեղծված: Շախմատի ծագման մասին կան բազմաթիվ առասպելներ, որոնց մեջ կա միայն մեկ ընդհանուր բան՝ բոլորի մեջ էլ շախմատի ծագման վայրը ընդունվում է Ասիան, ավելի կոնկրետ՝ Հնդկաստանը: Այս տեսակետն հաստատող որևէ ստույգ ապացույց չկա, բայց կան մի շարք պատմական և ազգագրական նշաններ, որոնք այդ ենթադրության օգտին են խոսում:

Հնագիտական պեղումների շնորհիվ հայտնաբերվել են շախմատին նմանվող խաղերի պատկերումներ: Արտասահմանյան որոշ լեզուներում պահպանվել են ֆիգուրների անուններ, որոնք վկայում են նրանց պատմական ծագումը, ինչպես օրինակ «վեզիրը»: Հայտնաբերվել են շախմատին վերաբերվող պատմական փաստաթղթեր, որոնք գրված են ավելի քան հազար տարի առաջ:

Սակայն, հիմնականում պահպանելով իրեն հատուկ գծերը իբրև արհեստական մի ձև, որը թույլ է տալիս խաղի միջոցով իրար հետ մրցեն երկու մարդկային մտքեր, շախմատն իր գոյության ընթացքում զգալի փոփոխությունների է ենթարկվել: Փոխվել են խաղի կանոնները, տարբեր ֆիգուրների հատկությունները և «հարվածային» ֆունկցիաները, բայց անփոփոխ է մնացել մարտադաշտը՝ շախմատային խաղատախտակը:




Բոլորիդ լավ ծանոթ է 64-վանդականոց այս տախտակը: Ձեզանից շատերը թերթերում, ամսագրերում, հատուկ շախմատային գրքերում, ռադիոյի և հեռուստատեսային հաղորդումներում տեսել և լսել են մի քանի խորհրդավոր անուններ ու արտահայտություններ: Բայց գաղտնիք կամ անմատչելի ու բարդ ոչինչ չկա: Շախմատ խաղալ լավ սովորելու համար, առաջին հերթին անհրաժեշտ է լավ ուսումնասիրել շախմատային նշանագրությունը: Սակայն ի՞նչ բան է շախմատային նշանագրությունը:

Խաղատախտակի ներքևից դեպի վեր գնացող բոլոր գծերը (ուղղաձիգները) հերթականությամբ նշանակվում են լատինական այբուբենի a, b, c, d, e, f, g, h տառերով: Հորիզոնական շարքերը, ձախից դեպի աջ, նշանակվում են հերթական թվանշաններով՝ 1, 2, 3, 4, 5, 6, 7, 8:

Այժմ մեզ համար պարզ է, որ եթե մենք կարդում և լսում ենք օրինակ «a» գծի մասին, ապա խոսքը վերաբերվում է խա-

գատախտակի ձախ եզրի շարքի 8 վանդակներին (եթե նայենք սպիտակների կողմից): Այժմ դժվար չէ կռահել, որ ասենք 3-րդ հորիզոնականը՝ դա տախտակի ամբողջ երրորդ շարքն է: Որովհետև յուրաքանչյուր վանդակը (կամ դաշտը) կարող է մ ե կ գծի և մ ե կ շարքի պատկանել, ապա այն միանգամայն պարզ որոշվում է այդ շարքի նշանակմամբ: Օրինակ, e6 դաշտը՝ այդ «e» գծով դաշտն է, որը 6-րդ շարքումն է գտնվում: Շախմատային գրականության մեջ ընդունված է նախ նշել տառը, հետո թվանշանը, ուստի միշտ ասում և գրում են ոչ թե 6e, այլ e 6 դաշտ: Լավ հասկանալու համար, թե ինչ է ուզում ասել գրողը իր գրքում, պետք է լավ կարդալ իմանալ: Վանկերով կարդալիս դժվար թե ընթերցանությունից բավականություն ստանաս: Ահա այդպես էլ շախմատային տեքստ կարդալիս օգուտ ստանալու համար, անպայման անհրաժեշտ է այն վարժ կարդալ: Իսկ դրա համար պետք է լավ ուսումնասիրել շախմատի այբուբենը՝ շախմատային նշանագրությունը:

**ԱՌԱՋԱԴՐԱՆՔ:** Սովորեցեք արագ և ճիշտ գտնել խաղատախտակի դաշտերը: Ավելի լավ է այդ անել ընկերների հետ: Կազմակերպեցեք առաջին շախմատային մրցությունը՝ ով ավելի լավ է ծանոթ խաղատախտակին:

## ՇԱԽՄԱՏԱՅԻՆ ՖԻԳՈՒՐՆԵՐ

Խաղատախտակի վրա մարտընչող «զորքերը» բաղկացած են սպիտակ ,և սև ֆիգուրներից: Մրցակիցների ֆիգուրների քանակությունը միանգամայն հավասար է. մեկական արքա և թագուհի, երկուական նավակ, ձի ու փիղ և ութական զինվոր: Այսպիսով, սկզբում յուրաքանչյուր խաղացող ունի 16 ֆիգուր, որոնք խաղատախտակի վրա տեղադրվում են ընդմիշտ սահմանված այսպիսի ձևով:




Հիշեցեք, որ միշտ ձախ կողմի ցածի անկյունային դաշտը պետք է սև լինի: Այդ ձևը հնարավորություն կտա խաղատախտակը տեղադրելու ժամանակ խուսափել սխալներից: Գրականության մեջ շախմատային ֆիգուրները նշվում են պայմանական տառերով, որոնք պետք է հիշել. Արքա—Ա. Թագուհի—Թ. Նավակ—Ն. Փիղ—Փ. Ձի—Ձ. զինվորները ոչ մի տառով չեն նշվում:

Դիագրամների վրա ֆիգուրները տպագրվում են պայմանական հետևյալ նշաններով. Արքա՝ ♔♚ Թագուհի՝ ♕♛ Նավակ՝ ♖♜ Փիղ՝ ♗♝ Ձի՝ ♘♞ Զինվոր՝ ♙♟:

Այն խաղացողը, որի քայլ կատարելու հերթն է, իր ֆիգուրներից մեկը այն դաշտից, ուր նա կանգնած է, պետք է տեղափոխի որևէ մի այլ դաշտ: Ահա հենց դա էլ համարվում է «քայլը», իսկ քայլերի նման հերթափոխումների մեջ էլ կայանում է պայքարի ողջ ընթացքը: Ճիշտ է, պարտիայի ընթացքում մեկ անգամ յուրաքանչյուր խաղացող իրավունք ունի միաժամանակ երկու ֆիգուր շարժելու, սակայն դրա մասին կխոսենք իր ժամանակին:

Շախմատային ֆիգուրների բոլոր քայլերը կատարվում են որոշակի կանոնների համաձայն: Ինչպիսի՞ք են այդ կանոնները: կամ ինչպե՞ս են քայլում շախմատային տարբեր ֆիգուրները:

### Արքա

Շախմատում բոլոր ֆիգուրները կարող են վերցվել կամ հարվածի տակ դրվել բացառությամբ արքայի: Բանն այն է, որ շախմատային պարտիայի նպատակն է՝ մատ հայտարարել հակառակորդի արքային, այսինքն՝ հակառակորդի արքային այնպիսի դրության մեջ դնել, երբ գտնվելով սպառնալիքի տակ, նա իր բանակի օգնությամբ չի կարող ոչնչացնել հարձակվող ֆիգուրը կամ փոխադրվել չգրոհված դաշտ: Եթե արքային վտանգ է սպառնում կամ, ինչպես ասում են, հակառակորդը «շախ» է տալիս, ապա խաղացողը պարտավոր է ինչ գնով էլ լինի պաշտպանել իր արքային: Սակայն եթե արքան ոչ մի փրկություն չունի, ապա հաշվվում է, որ արքան ստացավ «մատ»: Սա արդեն խաղի վերջն է, պարտությունը այն կողմի, որի արքան «մատ» է ստացել:

Արքան կարող է իր նախնական դաշտից տեղափոխվել ցանկացած հարևան դաշտը հետևյալ պայմաններում.

1. Եթե այն զբաղված չէ նույն գույնի այլ ֆիգուրով:

2. Եթե այն հակառակորդի որևէ ֆիգուրի հարվածի տակ չի գտնվում:




Եթե արքայի հարևան դաշտը զբաղված է հակառակորդի ֆի-

գուրով, ապա արքան կարող է գրավել այդ դաշտը, հանելով խաղատախտակից կամ, ինչպես ասում-են, վերցնելով հակառակորդի ֆիգուրը: Չմոռանաք է սակայն մոռանալ, որ այդ դեպքում չի կարելի կանգնել գրոհված դաշտի վրա, այսինքն՝ վերցնել պաշտպանված ֆիգուրը:

Պարտիայի ընթացքում մեկ անգամ արքան կարող է գնալ ոչ-հարևան դաշտը՝ «փոխատեղման» (ռակիրովկայի) ժամանակ: Փոխատեղումը դա այնպիսի մի քայլ է, երբ արքան և նրա բանակի նավակներից մեկը տեղափոխվում են (քայլում են) միաժամանակ, ընդ որում արքան շարժվում է ցանկացած կողմը երկու դաշտ, իսկ նավակը թռչելով արքայի վրայից՝ զբաղեցնում է նրա հարևան դաշտը: Այս դեպքում անհրաժեշտ է հետևյալ պայմանները պահպանել:

ՉԻ ԿԱՐԵԼԻ ՓՈԽԱՏԵՂՎԵԼ՝

1. Եթե փոխատեղում կատարելու պահին կամ հետո արքային վտանգ է սպառնում՝ շախ:

2. Եթե արքան և նավակը մինչ այդ շարժվել են (քայլել):

3. Եթե նավակի «ճանապարհը» ազատ չէ:

4. Եթե արքան անցնում է հակառակորդի գրոհած դաշտով:

### Ն ա վ ա կ

Նավակը քայլում է ուղղաձիգով ու հորիզոնականով ցանկացած քանակության դաշտերով:

ԱՌԱՋԱԴՐԱՆՔ: Խաղատախտակի վրա դասավորեցեք հետևյալ դիրքը: Սպիտակներ՝ Աf4, Նe4, Նg2(3) (շախմատային գրականության մեջ սովորաբար դիրքի գրանցումից հետո, ստուգման համար փակագծերում նշվում է կողմերի ֆիգուրների ընդհանուր քանակը): Սևեր՝ Աa2, Նc2, Նc4(3):

Այս դիրքում c2 վրա կանգնած նավակը իր տրամադրության տակ ունի հետևյալ քայլերը՝ b2, d2, e2, f2, g2, նա c1 կամ c3 գնալ չի կարող, որովհետև ստիպված է պաշտպանել իր արքային թշնամու g2 նավակի գործողությունից: Ստուգեք ինքներդ՝ ինչ քայլեր են հնարավոր մյուս նավակներով:

Լավ կլինի, եթե առաջին հերթին խաղալ իմացողներից որևէ մեկը հսկի ձեր փորձերը:

Եթե նավակը իր շարժման ճանապարհին հանդիպում է արգելքի, ասենք, հակառակորդի ֆիգուրի, ապա նա իրավունք ունի այն վերցնել և գրավել նրա տեղը: Բացառություն է կազմում, ինչպես մենք գիտենք, արքան, որին վերցնել չի կարելի:

Գր. Պետրոսյան

Հաջորդ անգամ կպատմենք այն մասին, թե ինչպես են քայլում շախմատային մյուս ֆիգուրները:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

## ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

«Պիոներ» ամսագրի ստեղծման տարեթիվը մինչև այժմ սխալմամբ համարվել է 1929 թվականը՝ «Հոկտեմբերիկի» առաջին համարից: Այնինչ, 1923 թվականից սկսել է լույս տեսնել «Պատկամ» ամսագիրը, որը հետագայում վերանվանվել է «Պիոներ», ապա՝ «Հոկտեմբերիկի»: Այս համարից սկսած՝ ուղղում ենք թույլ տված սխալը:

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ «Պապն ու Հաղգամը»

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ



„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06,

ՎՖ 07596, Պատվեր՝ 480, Տպաքանակ՝ 17.600, Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 31/III 1964 թ., ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության տպարան. Երևան, Տերյան փ., № 91: Գինը 20 կ.

ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ
ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



Աշխարհում կա մի զարմանալի քաղաք, ինքը՝ փոքրիկ, համբավը՝ մեծ։

Անցնում ես քաղաքի փողոցներով ու կարդում՝ Համլետի փողոց, Օթելլոյի փողոց, Մակբեթի փողոց, Ռոմեոյի փողոց, Դեզդեմոնայի փողոց...

Կանգնում ես թատրոնի շենքի առջև, որի ճակատին գրված է. «Շեքսպիրի անվան թատրոն»։ Մտնում ես մատենադարան. այնտեղ խնամքով պահված են Շեքսպիրի ստեղծագործությունները, ինչպես նաև նրանց մասին եղած բազմազան ու բազմալեզու գրականությունը։ Քաղաքի բոլոր տեսարժան վայրերը, հրապարակները, պուրակները, նույնիսկ հյուրանոցն ու նրա համարները կոչվում են շեքսպիրյան հերոսների անուններով։

— Ահա՛ թե ինչ... — հարցնում ես, — մի՞թե այս ամբողջ քաղաքը պատկանելիս է եղել մեկ մարդու ...

— Ո՛չ, — պատասխանում են քեզ, — դա պարզապես Վիլյամ Շեքսպիրի ծննդավայրն է։ Եվ նրա երախտապարտ համաքաղաքացիները ոչ մի ջանք չեն խնայում մեծագույն դրամատուրգի հիշատակն անթառամ պահելու համար։

Եվ իրոք, մինչև այժմ պահպանված է Շեքսպիրի տունը իր պարտեզով, որտեղ աճեցվում են այն բոլոր ծառերն ու ծաղիկները, որոնք հիշատակված են բանաստեղծի գրվածքներում։ Պահպանվում է նույնիսկ այն նստարանը, որի վրա նստել ու պարապել է պատանի Վիլյամը։

Այդ թանգարան-քաղաքը գտնվում է Անգլիայում և կոչվում է Ստրատֆորդ։ Աշխարհի բոլոր ծայրերից այստեղ են գալիս տուրիստական խմբեր, գիտնականներ, ճանապարհորդներ, գրողներ, ժուռնալիստներ։ Նրանք այցելում են քաղաքի բոլոր տեսարժան վայրերը և ապա խորին ակնածանքով գլուխ խոնարհում ու պսա՛կներ դնում բանաստեղծի գերեզմանին, որի վրա դրված կիսանդրին քանդակված է Շեքսպիրի ընկերոջ ձեռքով, հիշողությամբ, որովհետև կենդանի ժամանակ բանաստեղծը չի նկարվել։



# ՄԵԾԱԳՈՒՅՆ ՀԱՆՃԱՐԸ

Միայն իր ծննդավայրում կամ Անգլիայում չէ, որ ճանաչում ու սիրում են Վիլյամ Շեքսպիրին։ Աշխարհի ո՞ր քաղաքում չկան նրա անվան փողոցներ, ո՞ր քաղաքում չեն խաղում նրա անմահ ողբերգությունները ու կատակերգությունները։

Շեքսպիրին շատ բարձր էր գնահատում Կարլ Մարքսը. նա մանրամասնորեն ուսումնասիրել էր հանճարեղ դրամատուրգի բոլոր գործերը և ոչ միայն ինքը, այլև իր կինը և աղջիկները անգիր գիտեին շեքսպիրյան բոլոր մենախոսությունները։ Անգլերեն լեզվի ուսումնասիրության համար, որպես լավագույն աղբյուր, Մարքսը օգտագործում էր Շեքսպիրի երկերը։

Եվ իրոք, հարուստ է ու պատկերավոր Շեքսպիրի լեզուն։ Նրա իմաստուն, թևավոր խոսքերը զարմանք ու հիացմունք են պատճառել բոլոր սերունդներին։ Իրենց սքանչելի լեզվով, մարդկային վեհ գաղափարներով ու՞մ ասես, որ չեն հուզել շեքսպիրյան անմահ կերպարները՝ Համլետն ու Օֆելյան, Օթելլոն ու Դեզդեմոնան, Ռոմեոն ու Ջուլիետան, ո՞ր մեկը թվել։

Շեքսպիրն իրեն հատուկ կըրքոտությամբ ծառանում էր ամեն տեսակ բռնության դեմ, մերկացնում եսամոլ ու փառասեր արքաներին։ Նա ատում էր դրամի պաշտամունքը, ոսկու կուտակման մոլուցքով բռնված բուրժուաներին ու վաշխառուներին։ Մեծ բանաստեղծը երազում էր մի այնպիսի հասարակություն, որտեղ մարդիկ կվայելեն լիակատար ազատություն, համերաշխություն և իրավահավասարություն։

Ահա այդ բարձր գաղափարներով է, որ շեքսպիրյան ստեղծագործությունները երբեք չեն կորցնում իրենց թարմությունը, չեն իջնում աշխարհի բեմերից և շարունակում են հուզել ու հաճույք պատճառել մեզ։

Աշխարհի բոլոր ժողովուրդները խորին երախտագիտությամբ և սիրով նշում են հանճարեղ գրողի ծննդյան 400-ամյակը։

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

20 կ. 77806

# ՓՈՔՐԻԿ ՀՈՎԻՎԸ

ՀՈՎՀ. ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Գարուն է անուշ,
Արևն է շողում,
Զեփյուռն է քնքուշ
Ծաղկի հետ խաղում։

Տե՛ս, ծիլ ու ծաղիկ
Նազում են մարմանդ.
Դո՛ւրս արի, բալիկ,
Գառները տար հանդ։

Գառներն էլ քեզ պես,
Ուրախ, թովռուն,
Սիրում են ծաղիկ,
Արև ու գարուն։



# ԳԱՐՆԱՆԱՅԻՆ ԿԱԹԻԼՆԵՐԻ ԵՐԳԸ

ՎԻԿՏՈՐ ԿՈԶԵՎՍԿԻ

Կաթիլներն ենք մենք առաջին,
Կուրծքն ենք կտցում պաղ սառույցի.
Կատ-կա՛տ ու կա՜պ, կատ-կա՛տ ու կա՜պ,
Մենք չենք սիրում նստել պարապ։

Շողերի տակ ոսկեզօծված,
Պսպղում ենք ու կաթում ցած.
Կատ-կա՛տ ու ճե՜պ, կատ-կա՛տ ու ճե՜պ,
Կանգ չենք առնում մենք ոչ մի կերպ։

Սառնամանի՜ք դու պարծենկոտ,
Մի՛ սպառնա, մի՛ գա մեզ մոտ.
Սպառնալդ զուր է արդեն,
Գարնան ճամփան մենք կհարթենք։

Թարգմ. Գ. ՎԻՐԱՊՅԱՆ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ